## ՋՈՒԼՀԱԿԻ ԱՇԱԿԵՐՏԸ

Փոքրիկ Հարությունը գրել-կարդալ սովորեց Սանահնի վանքի դպրոցում, որը միջնադարյան Հայաստանի նշանավոր դպրոցներից էր: Պատանին հենց սկզբից աչքի ընկավ իր արտակարգ ընդունակությամբ: Շատ կարճ ժամանակում գրաճանաչ դառնալուց հետո նա սկսեց ազահորեն կարդալ վանքում պահվող հայերեն ձեռագիր մատյանները, որոնք նրա առջև բաց արին մեր ժողովրդի դարավոր գանձերը: Պատանին իմացավ իր ժողովրդի պատմությունը, հափշտակվեց Նարեկացու ըստեղծագործությամբ, կարդաց հայ պոեզիայի հատուկենտ նմուշները, որոնք ձեռագիր մատյաններով տարածվում էին վանքերում ու սակավաթիվ դպրոցներում:

Սակայն Հարությունին վիճակված չէր մնալ մատյանների աշխարհում: Նրա ծնողները ուզում էին, որ իրենց որդին գրել-կարդալուց բացի, մի արհեստ էլ սովորի: Ի՞նչ իմանային նրանք, որ նա օժտված է մի այնպիսի բնածին տաղանդով, որը որոշելու է նրա կյանքի ճանապարհը և նրան դարձնելու է մեծ, շատ մեծ մարդ ժամանակի ու հետագա դարերի համար:

Պատանին չընդդիմացավ ծնողների կամքին: Մահտեսի Կարապետը որդու ձեռքից բռնած՝ նրան տարա՜վ Թիֆլիս (այժմ՝ Թբիլիսի) և դարձրեց ջուլհակի աշակերտ: Այստեղ էլ Հարությունը աչքի ընկավ իր ընդունակությամբ ու աշխատասիրությամբ: Ըստ ավանդության, նա շուտով ոչ միայն լավ սովորեց ջուլհակի մասնագիտությունը, այլև կատարելագործեց աշխատանքային գործիքները, որի շնորհիվ աշխատանքը հեշտացավ, իսկ գործվածքը դարձավ ավելի նուրբ ու գեղեցիկ:

Բայց Հարությունը երկար չէր կարող զբաղվել ջուլհակությամբ. Նրան գերել ու կախարդել էր մի ուրիշ աշխարհ...

## ԳՈՒՍԱՆՆԵՐԻ ԱՐՔԱՆ

Վրաստանի մայրաքաղաքում աշուղներ շատ կային: Նրանց միջև հաճախ տեղի էին ունենում մրցություններ, որոնց մասնակցելու համար աշուղներ էին գալիս նաև օտար երկրներից: Աշուղական մրցություններին միշտ էլ մեծ բազմություն էր հավաքվում: Եվ Հարությունն էլ իր արհեստակից ընկերների հետ գնում էր լսելու աշուղներին, տեսնելու հաղթողին: Բնածին տաղանդով օժտված պատանին չէր կարող անտարբեր մնալ. նա սկսեց երգեր հորինել ու երգել, իսկ ընկերները խրախուսեցին նրան: Հետո նրան լսեցին նշանավոր աշուղները և բոլորն էլ խոստովանեցին, որ ծնվել է գուսանների արքան: Ու ջուլհակ Հարությունը դարձավ գուսան Սայաթ-Նովա:

# ՍԱՅԱԹ

Հետևելով ժամանակի աշուղական սովորությանը, Սայաթ-Նովան սկզբում գրում էր ադրբեջաներեն, ավելի ճիշտ՝ մի այնպիսի լեզվով, որը հասկանալի էր և՛ ադրբեջանցուն, և՛ թուրքին, և՛ պարսիկին: Հետո նա սկսեց գրել հայերեն ու վրացերեն: Մինչև այժմ մեզ հայտնի 225 երգերից 68-ը գրված են հայերեն, իսկ մնացածը՝ ադրբեջաներեն ու վրացերեն: Այդ երեք լեզուներին էլ նա տիրապետում էր կատարելապես: Պատմության մեջ հազվադեպ են այդպիսի տաղանդները, որ կարողանան ստեղծագործել երեք լեզվով, օգտագործելով այդ լեզուների բոլոր նրբությունները: Բայց կարևորը միայն լեզուներ իմանալը չէր, այլ այն, որ Սայաթ-Նովան գուսանական արվեստը բարձրացրեց նոր աստիճանի վրա: Նա և՛ հանճարեղ բանաստեղծ էր, և՛ հանճարեղ կոմպոզիտոր, և՛ լավ երգիչ ու երաժիշտ:

Այդպիսի բանաստեղծներով, ինչպիսին Սայաթ-Նովան է, կարող է և պետք է պարծենա ողջ ժողովուրդը: Դրանք երկնային պարգևներ են՝ ուղարկված ոչ բոլորին և ոչ հաճախ... Դրանք ընտրյալներ են, որոնք օրհնանք են թողնում իրենց դարին ու ժողովրդին:

Սայաթ-Նովան մեկն է այն առաջնակարգ բանաստեղծներից, որոնք իրենց հանճարի զորությամբ դադարում են մի ժողովրդի սեփականությունը լինելուց և դառնում են համայն մարդկության սիրելին:

Վ. ԲՐՅՈՒՍՈՎ

ՀՈԿՏԵՄԲԵՐ
№ 10 1963 Թ.




ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
35-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Ոչ, նա մի նորօրինակ ձև չի, մոդա չի, որ ժամանակի ընթացքում ձանձրացնի ու փոխվի: Գեղեցիկ ձևի մեջ մի մշտավառ հուր հոգի է նա, մի ազնիվ և լիքը սիրտ, մի հարազատ հզոր շունչ, որ մեր աշխարհի հարազատ շնչի նման միշտ խաղալու է Կովկասի ժողովուրդների վրա և՛ հայի, և՛ վրացու, և՛ թուրքի վրա, որովհետև հավասար ուժով երգել է և՛ հայերեն, և՛ վրացերեն, և՛ թուրքերեն:

ՀՈՎՀ. ԹՈՒՄԱՆՅԱՆ

# -ՆՈՎԱ

Մեծ բանաստեղծի ու երգչի համբավը արագ տարածվեց Վրաստանի սահմաններից հեռու: Այժմ նա՛ էր ուզում մրցության դուրս գալ աշխարհի նշանավոր գուսանների հետ, աշխարհ տեսնել: Եվ Սայաթ-Նովան եղավ Հայաստանում, Տանկաստա-


ԹԻՖԼԻՍ: 1797 Թ.

նում, Պարսկաստանում ու հասավ մինչև Հնդկաստան: Տարիներ տևող շրջագայությունից նա վերադարձավ ավելի զարգացած ու կատարելագործված: Թիֆլիսի բնակչությունը սիրով ընդունեց իր հանճարեղ գուսանին: Իսկ Հերկլ թագավորը նրան տարավ արքունիք: Վաղուց ի վեր Թիֆլիսում մեծ թիվ են կազմել հայերը, որոնք այն ժամանակ մեծ դեր էին խաղում մայրաքաղաքի տնտեսական, քաղաքական ու կուլտուրական կյանքում: Հայ վաճառականներն ու արհեստավորները սերտորեն կապված էին վրաց արքունիքի հետ: Եվ պատահական չէ, որ արքունիքում վրացերենի հետ զուգահեռ գործածվում էր նաև հայերենը: Արդեն սովորույթ էր դարձել, որ հայ գուսանները, գիտունները ու արվեստի մարդիկ պատվավոր տեղ էին ունենում վրաց արքունիքում: Սայաթ-Նովայից առաջ վրաց արքունի երգիչն էր հայ աշուղ-բանաստեղծ և նկարիչ Նաղաշ Հովնաթանը: Իսկ Սայաթ-Նովայի ժամանակ արքունի նկարիչն էր Նաղաշ Հովնաթանի թոռը՝



**Սայաթ-Նովան մինչև հիմա կախարդել է ինձ. և չեմ կարող ելնել երևակայական դյութանքից:**

ԱՎ. ԻՍԱՀԱԿՅԱՆ

Հովնաթան Հովնաթանյանը:

Հերակլ թագավորը շատ էր սիրում Սայաթ-Նովային և հաշվի էր առնում նրա կարծիքը, նրան համարելով իր խորհրդատուն ու բարեկամը: Բայց Սայաթ-Նովան, որ աշխատավոր ժողովրդի երգիչն էր, տեսել էր գյուղացու և արհեստավորի թշվառ կյանքը, չէր կարող հանգիստ մնալ, երբ վերնախավի ազնվականները վայելում էին աղքատ աշխատավորի դառը քրտինքը: Նա իր սրամիտ բանաստեղծություններով ու երգերով ծաղրում էր իշխանավորներին, հաճախ էլ ուղղակի բողոքում թագավորին: Իշխանավորներն ու մեծահարուստները թշնամանքով լցվեցին մեծ երգչի դեմ, իսկ թագավորն էլ, վերջ ի վերջո, պետք է պաշտպաներ նրանց շահերը: Սայաթ-Նովային մնում էր կա՛մ մոռանալ ժողովրդին ու մնալ արքունիքում, կա՛մ հրաժարվել արքունի կյանքից: Եվ նա ընտրեց վերջինը, ասելով.

«Յիս ռամիկ իմ՝ թավադութին չիմ ուզում»:

Սայաթ-Նովան գնաց Կախեթի գավառի հայկական Կախի գյուղը և դարձավ գյուղի ծխատեր քահանա: Իսկ երբ մեռավ կինը, նա թողեց քահանայությունը և գնաց Հաղպատի վանքը:

1795 թվականին Պարսկաստանի Աղա Մահմադ խանը արշավում է Թիֆլիսի վրա: Համաժողովրդական այդ աղետի լուրն առնելուն պես Սայաթ-Նովան, որն արդեն ութսունն անց ծերունի էր, թողնում է Հաղպատի վանքը և շտապում Թիֆլիս: Իր տղաներին ու աղջիկներին ուղարկում է Մոզդոկ, իսկ ինքը ժողովրդական աշխարհազորի հետ մասնակցում է քաղաքի պաշտպանությանը և սրախողխող արվում պարսիկների ձեռքով:



ՀԱՂՊԱՏԻ ՎԱՆՔԸ

[illegible]

ՍԱՅԱԹ-ՆՈՎԱՅԻ ՁԵՌԱԳԻՐԸ

Թե՛ Կախի գյուղում և թե՛ Հաղպատի վանքում մեծ երգիչը չդավաճանեց իր քնարին: Նրա հոգեզմայլ ու գողտրիկ երգերից շատերը գրված են այդ տարիներին: Սայաթ-Նովան բողոքում էր տիրող անարդար կարգերի դեմ և գովերգում անձի ազատությունը, ժողովուրդների բարեկամությունը, մարդկային ամենալավ զգացմունքները: Եվ այդ ամենը նա կատարել է տաղանդի մեծ ուժով, բարձր արվեստով:

Սայաթ-Նովան հայ ժողովրդի պարծանքն է, մարդկության հանճարեղ զավակներից մեկը: Դրա համար էլ Խաղաղության համաշխարհային խորհրդի որոշմամբ ամբողջ աշխարհում նշվում է մեծ երգչի ծննդյան 250 տարին:

**Հերակլ թագավորի արշավանքի ժամանակ Սայաթ-Նովան առաջնորդում էր մարտիկների ռազմախումբը և իր սազով ոգեշնչում հայրենիքի քաջարի պաշտպաններին։**

ՎՐԱՑ ՍԱՏԵՆԱԳԻՐ

**Եվ ահա Սայաթ-Նովան այժմ կանգնած է մեր առջև, որպես խոր էմոցիայի տեր և հազվագյուտ լիրիկական ձայն ունեցող մի երգիչ, որի 200 տարի առաջ ասված մոտիվները այսօր էլ սրտի հուզմունքով են լսվում։ Որքան ավելի ենք հեռանում նրանից՝ նա ավելի մոտենում է։ Սայաթ-Նովան մեզ հետ է՝ գրողների, բանվորների, կոլտնտեսականների, երիտասարդների և ծերերի հետ։**

Ի. ԳՐԻՇԱՇՎԻԼԻ

## ԱՎԱՆԴՈՒԹՅՈՒՆՆԵՐ

*Սայաթ-Նովայի հարուստ ու փոթորկալի կյանքից մեզ քիչ տեղեկություններ են հասել։ Կենսագրական առանձին փաստեր հայտնում է ինքը բանաստեղծը երգերի տողերում։ Մնացածը, ինչ որ գիտենք նրա մասին, հուշ է ու ավանդություն, որ անցել են սերնդից սերունդ։*

*Ահա այդ ավանդություններից երեքը։*

1

*Մի անգամ Վրաստանի թագավորը գերի է ընկնում պարսիկների ձեռքը։ Շահը հրամայում է հանել նրա աչքերը և բաց թողնել։ Այդ ժամանակ Սայաթ-Նովան, որը թագավորի հետ նույնպես գերի էր ընկել, քյամանչան ձեռքին մոտենում է շահին և ասում.*

*— Ամենակարող շահ, հրամայիր, որ հանեն ի՛մ աչքերը։ Նա թագավոր է և առանց աչքերի չի կարող պետք գալ իր ժողովրդին, ես հասարակ աշուղ եմ և առանց արևի լույսի էլ կարող եմ երգել։*

*Շահը զարմանքից քարանում է։ Ապա իմանալով, որ իր առջև ծնկի եկողը ոչ թե մի հասարակ աշուղ է, այլ հռչակավոր Սայաթ-Նովան, ասում է.*

*— Դու ոչ միայն մեծ զուսան ես, այլև մեծ հոգու տեր մարդ։ Դու արժանի ես արևի լույսին ու քո շնորհիվ չի կուրանա նաև քո թագավորը։*

**Հասա մինչև Ֆրանգստան,**
**երգ ու տաղեր լսեցի—**
**Սայաթ-Նովի ձիրքի նման**
**երկնային ձիրք չտեսա։**

Ե. ՉԱՐԵՆՑ




ՍԱՅԱԹ-ՆՈՎԱՅԻ ԳԵՐԵԶՄԱՆԸ ԹԲԻԼԻՍԻՈՒՄ

**Չի մեռնի էն ժողովուրդը, որ քեզ նման**
**սիրել գիտի,**
**Որ վերքերից երգեր ծնել ու այրվելով**
**այրել գիտի.**
**Մեր երգերով, մեր վերքերով դար ու դարեր**
**քայլենք պիտի,**
**Ու դու մեզ հետ քո քյամանչով, գալու ես**
**դեռ, Սայա՛թ-Նովա։**

Ս. ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ

*Եվ շահը հրամայում է բոլոր գերիներին բաց թողնել ողջ և առողջ։*

*Դրանից հետո վրաց թագավորը խնջույքներում առաջինը խմում էր Սայաթ-Նովայի կենացը, որպես իր փրկարարի։*

2

Պարսից դեսպանի հետ խանակցելիս Հերակլ թագավորը նեղ դրության մեջ է ընկնում և օգնության է կանչում իմաստուն ու ճարտարախոս բանաստեղծին։ Սայաթ-Նովան իր մտածված ու սրամիտ հարց ու պատասխաններով ստիպում է պարսից դեսպանին՝ թողնել վրացական արքունիքը և հեռանալ պարտված ու ամոթահար։

3

Հաղպատի վանքում եղած ժամանակ, մի անգամ, Սայաթ-Նովան իմանում է, որ օտար երկրից մի անվանի աշուղ է եկել Թիֆլիս։ Վախենալով, որ Թիֆլիսի աշուղները կարող են պարտվել, ծմռան ցրտին Հաղպատից ոտքով գալիս է Թիֆլիս։ Բերդի եկեղեցում զգեստափոխվում է և ծպտված գնում փնտրելու օտարերկրացի աշուղին։ Հաղպատի վանքի առաջնորդ Դավիթ եպիսկոպոսը, որն այդ ժամանակ Թիֆլիսում էր, լսելով այդ լուրը, իր սպասավորներին հրամայում է շտապ գտնել նրան։ Սրանք շատ են փնտրում և վերջապես գտնում են Քուռ գետի սառցի վրա, կամուրջի տակ նստած, քյամանչան ծեռքին, շրջապատված իր հին ընկերներով։

**ՊԱՐԳԵՎ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ**

## ՍԱՅԱԹ-ՆՈՎԱՅԻՆ

Միշտ լացել ես, Սայաթ-Նովա, թե՝ դարիս պես սև դար չկա,
Հառաչել ես, թե՝ հե՜յ աշխարհ, վիշտս լացող մի յար չկա,
Հիմա երգի, սիրո դար է, տես, ինչպես են մարդիկ փոխվել,
Ազգերն իրար բարեկամ են, և էլ տեր ու նոքար չկա։
Դու քո կյանքից տրտում անցար, շուրթիդ բողոք, Սայաթ-Նովա,
Այդ քո դարն էր այդպես դաժան և անողոք, Սայաթ-Նովա,
Ախով անցար, խոցված հոգով, սակայն ի՞նչ հոգ, Սայաթ-Նովա,
Երբ որ խալխի վիշտը լացող սրտիդ լարի պես լար չկար։

*ԺՈՐԱ ՎԱՐՈՍՅԱՆ*

*(Ախուրյանի շրջանի Մարմաշեն գյուղի միջնակարգ դպրոցի 9-րդ դասարանի աշակերտ)*



ՍԱՅԱԹ-ՆՈՎԱ

Գործ՝ նկարիչ ՀԱԿՈԲ ԿՈՋՈՅԱՆԻ

ՍԱՅԱԹ-ՆՈՎԱՅԻ ԱՆՎԱՆ ՓՈՂՈՑԸ ԵՐԵՎԱՆՈՒՄ

Լուսանկարները՝

*ՌՈՒԲԵՆ ԱԿՈՊՈՎԻ և ԶԱՎԵՆ ԲԸՏԻԿՅԱՆԻ*




ԽԱԺԱԿ ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

Մեր գյուղում հրաշալի այգիներ կան, մի խորունկ ձոր՝ վայրի թթենիներով ու մասրենիներով: Ձորում ժայռափոր մատուռ կա, իսկ ձորի պռունկին մեր նոր դպրոցի հսկայական շենքն է: Ես այդ դպրոցում եմ սովորում: Անունս Միսակ է: Իսկ այգիների, ձորի ու ժայռափոր մատուռի մասին ասացի, քանի որ իմ պատմությունը դրանց հետ է կապված:

Դեռ տարիներ առաջ տատս ասում էր, թե մատուռում մի ժամանակ պահված է եղել ամբողջ գյուղի ունեցվածքը. ոսկի, արծաթ, հռչակավոր Միսքար* Վարդանի սարքած պղնձե կուլաներն ու ճաշի ամանները, պարսկական գորգեր ու կարպետներ, նախշուն վերմակներ ու փետուրե բարձեր, բրդե ներքնակներ ու... «սուրբ» գրքեր:

Տատս այս բոլորն ասում էր երկյուղածությամբ, խաչակնքելով.

— Մեռնեմ զորությանը...

Բայց տատս իր պատմածներից ոչ մեկը չէր տեսել:

— Իմ մեծ հայրը,— ասում էր նա,— ապրեց ուղիղ հարյուր տարի: Գյուղի մեծավոր էր, երկու գութան էր լծում: Նրա պապը հովիվ էր, սրա հայրը տիրացու է եղել, սրա պապը...

Ու երբ հասնում էր Մեծ Միսակին, ոգևորվում էր.

— Հերոս մարդ է եղել,— ասում էր նա,— երբ թշնամիները մեր գյուղի վրա են հարձակվել, Մեծ Միսակը հավաքել է գյուղի հարստությունը, պահել մատուռում, մեռնեմ զորությանը, իսկ ինքը, գյուղի ջահելների հետ, դուրս եկել թշնամու դեմ: Էդտեղ էլ սպանվել է:

— Հետո՞, բա գյուղի հարստությո՞ւնը:

— Ո՞վ գիտի: Ասում են մի մասը հանել են, մի մասի տեղը չեն գտել: Դե մատուռի տակ խոր-խոր թաքստոցներ կան:

Այսպես պատմում էր տատս տարիներ առաջ:

* Միսքար—պղնձագործ:

* * *

Վարդանն ուզում է ավտովարորդ դառնալ, դրա համար էլ տեխնիկան ուսումնասիրող խմբակի անդամ է դարձել, իսկ ես բնախուզական խմբակի անդամ եմ: Ես Վարդանին «Մրոտ» եմ ասում (ավելի հարմար մականուն չգտա), իսկ նա ինձ ասում է «Թիթեռ բռնող»: Ամեն տարի, ամառային արձակուրդին, մենք միասին գնում ենք ձորը



լողանալու, միասին նայում ենք ժայռափոր մատուռին: Նայում ենք երկար: Վարդանը գիտի տատիս պատմությունը, ախր, մեր Վարդանը հռչակավոր Միսքար Վարդանի թոռան-թոռան-թոռան-թոռն է...

Ու մի օր էլ Վարդանը թե.

— Լսիր, Թիթեռ բռնող, արի մատուռն ուսումնասիրենք:

— Ուսումնասիրենք,—ասացի,—Մրոտ:

Բայց հեշտ էր ասելը: Մատուռն անմատչելի էր, ով գիտի քանի՜-քանի՜ տարի առաջ ժայռի փլվածքը փակել էր դեպի մատուռը տանող արահետը:

Պարան բերեցինք, կապեցինք ձորի պռունկին բուսած ծառից:

— Իջի՛ր,— ասացի,—Մրոտ:

— Բա էլ ի՞նչ բնախույզ ես,—ծաղրեց Վարդանը,—թե՞ միայն թիթեռների վրա է ուժդ պատում:

Մենք այսպես վիճում էինք, իսկ մի քանի փոքրահասակներ ծիծաղում էին վրաներս: Վերջապես Վարդանն ասաց.

— Լավ:

Նա բռնեց պարանն ու զգուշությամբ սկսեց սողալ դեպի ցած: Սիրտս ծուլ-ծուլ էր լինում, վախից պապանձվել էի: Ձգված պարանը հանկարծ թուլացավ. «կտրվեց»—կայծակի նման անցավ մտքովս: Բայց չէ, թմփոց չեղավ:

— Մրո՜տ, Մրո՜տ...

— Էհե՜յ,—ձայնը գալիս էր ինչ-որ խոր տեղից:

— Կենդանի ե՞ս:

— Կենդանի եմ, Թիթեռ բռնող, մատուռում եմ, արի:

Ես վախվխելով բռնեցի պարանը: Ոտքերս ու ձեռքերս հազար տեղից քերծվեցին, մինչև հասա մատուռի դռանը և Վարդանի օգնությամբ ներս մտա:

Դա մի կիսախավար, փոքրիկ մատուռ էր: Դատարկ էր, միայն անկյունում մի խաչքար կար, որի առաջ, գետնին մի բան էր սևին տալիս: Մոտեցանք, մի ժանգոտ պղնձե թաս էր: Պահեցինք լույսի դեմ, վրա՛ն զանազան նախշեր կային, իսկ տակը խոր-խոր տառերով դաջված էր՝ «Միքաքար Վարդան»:

— Տանենք,—ասաց Վարդանը:

— Ո՞ւր տանենք, Մրոտ:

— Հետներս...

Ես ձայն չհանեցի, իսկ Վարդանն հանկարծ գլխի ընկավ:

— Թիթեռ բռնող:

— Հը՞:

— Ո՞նց ենք դուրս գալու:

— Եսիմ,—բարկացա ես,—հենց մի գլուխ զոռում էիր...

Գնացինք դեպի դուռը: Դռան առաջ ժայռից կախված ճոճվում էր պարանը, իսկ ձորում ահագին բազմություն էր հավաքվել: Բոլորն ապշած դեպի մեզ էին նայում, երեխաներն աղմկում էին: Վերջապես ջրաղացպան Պողոսը սաստեց երեխաներին ու մեզ դառնալով գոռաց.

— Ա՛յ տղա, էդ ո՞ւր եք մտել:

— Մատուռը,—ձայն տվեց Վարդանը:

— Բա հիմա ո՞նց եք դուրս գալու:

— Եսիմ...

— Ա՛յ տղա, պարանով դուրս գալու փորձ չանեք, կընկնեք շանսատակ կլինեք:

— Բա ի՞նչ անենք:

— Ձոռ ու ցավ անեք: Էս է, մարդ կուղարկեմ շրջանից հրշեջներ գան...

Անցավ երկու ժամ: Արևը թեքվեց: Ձորում աղմուկը շատացավ: Մենք նորից մոտեցանք դռանը, ներքև նայեցինք: Գյուղի կեսը հավաքվել էր, այդտեղ էին նաև իմ ու Վարդանի ծնողները: Մերոնք վախեցած լռել էին, իսկ Վարդանի մայրը, շրջապատի վրա ուշք չդարձնելով, բարձրաձայն նախատում էր.

— Վարդան տղա, թե մի էդտեղից կիջնե՜ս...՝ Էդպե՞ս ես անամերձի լոբին ջրում, ա՛յ գետինը մտնես, գետինը...

Մենք սսկվել էինք: Վերջապես ջրաղացպան Պողոսը լռեցրեց Վարդանի մորն ու գոռաց.

— Ա՛յ տղա, շրջանից շոֆեր Վաղոն եկավ: Ասել են՝ հրշեջները առավոտը կգան: Հիմի պարա՛նով ձեզ ցախ ու ուտելիք կտանք...

Պարանով մեզ ուտելիք, արքատ ու լուցկի ուղարկեցին, հետո պարանն արձակեցին:

— Գիշերը կրակ արեք, իրար կպեք, չմրսեք,— վերջին անգամ կարգադրեց ջրաղացպան Պողոսը:

Վարդանի մայրը վերջին անգամ չանչեց.

— Գետինը մտնես, գետինը, թե մի էդտեղից կիջնե՜ս...

* * *

Մնացինք մենակ: Նստեցինք դեմ-դիմաց ու իրարից խռոված պանիր-հաց էինք ուտում: Երբ ուտելը վերջացրինք, ես ասացի.

— Մրո՛տ:

— Ձո՛ռ:





— Մեկ է, գործ չունենք, արի մատուռը զննենք:

— Դե ի՞նչ զննենք,—բարկացավ Վարդանը,— դատարկ է, էլի:

Ես կիսախավարում սկսեցի պատերը շոշափել: Իսկապես ոչ մի հետաքրքիր բա՜ն: Արդեն հուսահատված ետ էի դառնում, երբ հանկարծ մի բարակ սուլոց լսեցի: Կանգ առա: Ձայնը ոտքերիս տակից էր գալիս: Վախեցած վառեցի լուցկին: Ոտքերիս տակ ոչինչ չկար, սալահատակն էր միայն: Ոտքս բարձրացրի, ձայնը կտրվեց: Ոտքս կրկին վար դրի, կրկին սուլոցի նման մի ձայն եկավ:

— Մրո՛տ,—ձայն տվի Վարդանին:

— Ի՞նչ կա:

— Էստեղից ձայն է գալիս:

— Ջհանդամը:

Ասաց, բայց, երևում է, հետաքրքրվել էր, մոտեցավ: Ես փորձը կրկնեցի, Վարդանը լուցկի վառեց: Ու այդ ժամանակ հենց իմ ոտքի տեղում մի փոքրիկ, կլոր անցք նկատեցինք:



— Էս ի՞նչ է, Թիթեռ բռնող,—զարմացավ Վարդանը:

— Սրա տակը փուչ է, էստեղից օդ է դուրս գալիս:

Ձեռքերով ետ տարանք հատակի փոշին: Անցքը երկու սալերի արանքում էր: Վարդանն արքատի միջից մի հաստ փայտ ջոկեց: Մտցրինք անցքի մեջ, թափ տվինք, քարը դողաց ու կարծես թե մի փոքր շարժվեց տեղից: Կրկնեցինք էլի, էլի, մինչև երկու սալերի արանքում տեղ բացվեց երկուսիս մատների համար: Միասին կպանք: Քարը դողաց, մի մատ բարձրացավ ու հանկարծ մեզ համար անակընկալ ետ ընկավ: Ինչ-որ տարօրինակ չրխկոց լսվեց: Օդի հոսանքը խփեց դեմքներիս: Պարզ էր, մեր առջև բացվել էր Մեծ Միաբանի գաղտնարանի դուռը:

— Օդի հոսանք կա,—ասացի ես,—ուրեմն ծայրը բաց է:

— Հիմա ի՞նչ անենք,—հարցրեց Վարդանը:

— Պիտի հետազոտել:

— Դու մտիր հետազոտիր:

— Ե՞ս:

— Բա ե՞ս, պարծենում ես, բնախույզ...

Ես չհասցրի պատասխանել, հանկարծ Վարդանը սողաց անցքի մեջ: Քիչ հետո լսեցի նրա խուլ ձայնը.

— Է՜յ, Թիթեռ բռնող, արի՛:

Ձեռքերս առաջ պարզած ներս սողացի: Փորձեցինք լուցկի վառել: Բոցն իսկույն հանգավ, դիմացից քամի էր փչում:

— Ետ դառնանք,—ասացի ես:

Վարդանը մի պահ լռեց, հետո թե.

— Գիտե՞ս ինչ, արի մի քիչ գնանք, ետ դառնալը կա ու կա:

Սողացինք առաջ: Մութն էր, բայց զգում էինք, որ անցքը գնալով լայնանում է: Դիմացից փչող քամին չէր դադարում: Քիչ հետո արդեն կարողանում էինք գնալ կռացած: Լուցկի վառեցինք, բոցը մի կերպ պաշտպանեցինք քամուց: Զարմանքից քարացանք: Գտնվում էինք հղկված, կլոր, կրաշաղախ թունելում: Սրտապնդված առաջ գնացինք: Արդեն քայլում էինք կողք-կողքի, իրար ձեռքից բռնած:

— Ետ չդառնա՞նք:

— Չէ՛,—բարկացավ Վարդանը,—ասացի՝ ետ դառնալը կա ու կա:

Հանկարծ նա տնքաց.

— Վա՜յ:

Նույն ժամանակ գլուխս կպավ ինչ-որ բանի:

— Վա՜յ,—գոչեցի ես:

Նորից լուցկի վառեցինք: Թունելը նեղացել էր: Մեր գլուխներն առաստաղին էին կպել:

— Թիթեռ բնող,—հանկարծ ասաց Վարդանը:

— Հը՞:

— Ուժ տուր, մի քիչ էլ գնանք, ազնիվ խոսք, ոնց որ թե առջևում աղոտ լույս է երևում:

— Չէ մի:

— Ազնիվ խոսք, ուզում ես մնա, ես կսողամ:

Սկսեց դանդաղ սողալ: Ես սարսափած կպել էի գետնին: Ինձ թվում էր, թե առաստաղը հիմա փլվելու է վրաս, շունչս կտրվում էր: Միակ սրտապնդող բանն այն էր, որ առջևից լսում էի ցեխի շփշփոցն ու Վարդանի խուլ տնքոցները: Բայց ահա ամեն ինչ լռեց:

— Վարդա՜ն,—գոռացի լեղապատառ:

Նույն ժամանակ ընկնող քարերի թփթփոց լսեցի ու մեկ էլ Վարդանի ուրախ գոռոցը.

— Արի՜, արի՜, անցքը գտել եմ:

Անասելի ճիգեր անելով սողացի առաջ: Անցքն այնքան նեղացավ, որ թվում էր այլևս առաջ գնալու հնար չկա: Ցեխը ծածկել էր ինձ, ոչինչ չէի տեսնում: «Վերջ»—մտածեցի հուսահատ: Բայց հենց այդ պահին մեկը բռնեց մազերիցս: Վարդանն ինձ այնպես հանեց անցքից, ինչպես շշից խցանն են հանում:

Իրիկնամուտ էր: Ես ու Վարդանը նստեցինք իրար կողքի, ինչ-որ հին հնձանի հատակին: Հընձանի պատի տակ մի խոռոչ էր սևին տալիս, շուրջը երկու սալքար էին ընկած:

— Ո՞րտեղ ենք, Մրո՛տ,—հարցրի:

— Քոռ ե՞ս,—բարկացավ Վարդանը,—չե՞ս տեսնում, որ դեղձենուտի հնձանում ենք:

Շուրջս նայեցի: Իսկապես կոլտնտեսության դեղձենուտի հնձանում էինք, ձորից ավելի քան մեկ կիլոմետր հեռու:

Մինչ մենք խոսում էինք, քանդված հնձանի դռան մեջ հայտնվեց պահակ Մուկուչ բիձան:

— Անամոթնե՛ր,—բարկացած ասաց նա,—ես էլ ասում եմ ով է ամեն գիշեր վաղահաս դեղձերը թռցնում:

Մենք ոտքի ելանք:

— Մուկուչ բիձա,—սկսեց Վարդանը...

— Ձենդ կտրի՛:

— Ախր մենք... էն բանը... հետախուզում էինք...

— Գետինն էլ չե՞ք մտնում,—գոռաց պահակը,—առաջ ընկեք, հիմի ձեզ կտանեմ Գարսևանի մոտ...

* * *

Եվ ահա Մուկուչ բիձան մեզ տանում է կոլտնտեսության գրասենյակը: Ամբողջ ճանապարհին նա փնթփնթում էր.

— Հիմի ես ձեր գլխին սև հետախուզյա կբերեմ:

Գյուղ մտանք: Մենք ցեխոտ, գլխիկոր գնում էինք առջևից: Կամաց-կամաց մարդիկ շրջապատում էին մեզ:

— Էս որտեղի՞ց դուրս ընկան: Ա՛յ տղա, բա սրանք մաքառում էին:

Իսկ Մուկուչ բիձան քայլում էր հպարտ: Նա վերջապես բռնել էր վաղահաս դեղձի գողերին:

* * *

Հիմա, երբ մեր գյուղը տուրիստներ են գալիս (մեր գյուղում մի քանի հնություններ կան), աշխարհագրության ուսուցիչը ցույց է տալիս նաև ստորերկրյա ճանապարհը ու պատմում Մեծ Միսաքի, Միսաքար Վարդանի և թունելի խոռոչներից հանած հնությունների մասին: Մեր մասին էլ է պատմում:

# ԱՇՈՒՆԸ ԳՅՈՒՂՈՒՄ

*ԶԱՎԵՆ ԳԱՍՊԱՐՅԱՆ*

Առավոտն է աչքը բացում
Իմ հայրենի գյուղի,
Արեգակն է ոսկեզօծում
Լեռներ, հանդ ու ուղի...
Այգիներում բերքով հասուն
Երգն է հնչում թովիչ,
Բարդիներն են մեղմիկ շրշում
Աշնան անուշ հովից:
Այնպես ուրախ է կարկաչում
Հանդով անցնող առուն.

Այգեկութ է, և ամենուր
Աշխատանքն է եռում...
Դեղձ ու խաղող են հավաքում
Տղա-աղջիկ ջահել,
Աշխատանքը նրանց հոգում
Ծով եռանդ է վառել:
Ոսկի աշունն է թևածում
Ամեն մի հարկի տակ,
Դարձած բարիք ու լիություն,
Դարձած երգ ու վաստակ...



# ՋԵԼՍՈՄԻՆՈՆ ԽԱԲԵԲԱՆԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ

ՋԱՆՆԻ ՌՈԴԱՐԻ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ



ԴԼՈՒԽ ՏԱՍՆԵՐՈՐԴ

Բարեբախտաբար, քաղաքի այդ մասում տները այնպես էին կպած իրար, ինչպես տառերը տակառի մեջ, և Ջելսոմինոն խրախուսվելով Կաղլիկ-կատվի հորդորներից, առանց որևէ դժվարության, կտուրից-կտուր էր թռչում։ Իսկ Կաղլիկն, ընդհակառակը, ուզում էր, որ կտուրների միջև տարածությունը մի փոքր լայն լիներ, որպեսզի ուզածի չափ մի լավ թռչկոտեր։ Բայց հանկարծ Ջելսոմինոն սայթաքեց և ընկավ մի փոքրիկ պատշգամբ, ուր մի ծերուկ ծաղիկներ էր ջրում։

— Ներեցեք, խնդրեմ,— ցաված ծունկը շփելով ասաց Ջելսոմինոն։ — Ես բոլորովին չէի ուզում այս ձևով ձեր տունն ընկնել։

— Խնդրում եմ ներողություն չխնդրեք,— քաղաքավարի ասաց ծերուկը։ — Ես երջանիկ եմ ձեր այցելության համար։ Ավելի լավ է, ասեք, հո չե՞ք վնասվել։ Հույս ունեմ, որ ամեն ինչ կարգին է ձեզ մոտ։

Կաղլիկ-կատուն կտուրից նայեց ցած ու մլավեց.

— Կարելի՞ է։

— Օ՜, էլի մի այցելու,— ուրախացած ասաց ծերուկը,— եկե՛ք, եկե՛ք, ես շատ ուրախ կլինեմ։

Ջելսոմինոյի ծունկը անընդհատ ուռչում էր ու ուռչում։

— Ես շատ եմ ափսոսում, որ ոչ մի աթոռ չունեմ, որպեսզի կարողանայիք նստել,— շարունակեց ծերուկը։

— Պառկեցնենք մահճակալին,— առաջարկեց Կաղլիկ-կատուն,— եթե, իհարկե, դուք չեք առարկում։

— Ցավն այն է,— վշտացած ասաց ծերուկը,— որ ես նույնիսկ մահճակալ չունեմ։ Լա՛վ, գնամ հարևանի բազկաթոռը խնդրեմ։

— Ո՛չ, ո՛չ, ես կարող եմ հատակին էլ նստել,— շտապ ասաց Ջելսոմինոն։

— Դուք մտեք սենյակ, տեղավորվեք հատակին,— առաջարկեց ծերուկը,— իսկ ես ձեզ համար համեղ սուրճ կպատրաստեմ։

Սենյակը մեծ չէր, բայց մաքուր էր, գեղեցիկ, փայլեցրած կարասիներով։ Այստեղ կար սեղան, կային պահարաններ, բայց աթոռի ու մահճակալի հետքն անգամ չէր երևում։

— Մի՞թե դուք անընդհատ ոտքի վրա եք լինում,— հարցրեց Կաղլիկ-կատուն։

— Այո՛,ստիպված,— պատասխանեց ծերուկը։

— Եվ դուք բոլորովին չե՞ք քնում։

— Երբեմն կանգնած եմ քնում, բայց հազվադեպ։

Ջելսոմինոն ու Կաղլիկը նայեցին իրար, իբր, ահա բեզ էլի մեկը, որ սիրում է հեքիաթներ պատմել։

— Ներեցեք հետաքրքրասիրության համար, իսկ դուք քանի՞ տարեկան եք,— նորից հարցրեց Կաղլիկ-կատուն։

— Ճշգրիտ չեմ կարող ասել։ Ես ծնվել եմ տաս տարի առաջ, բայց հիմա մոտավորապես յոթանասունհինգ - յոթանասունվեց տարեկան կլինեմ։

Երևի իր զրուցակիցների դեմքի արտահայտությունից՝ ծերուկը հասկացավ, որ նրանք ոչ մի կերպ չեն հավատում իրեն։ Հառաչելով նա ասաց.

— Սա սուտ չէ։ Ցավոք սրտի, անհասկանալի, բայց ճշմարիտ պատմություն է։ Եթե ուզում եք, քանի դեռ սուրճը չի եփվել, ես ձեզ մանրամասն կպատմեմ այդ մասին։

— Իմ անունը Բենվենուտո է,— սկսեց նա։— Բայց սովորաբար ինձ «Տիտիկ չանող Բենվենուտո» են ասում...

Այսպես ուրեմն, Բենվենուտոն ծնվեց հնոտեվաճառի ընտանիքում։ Այդքան աշխույժ և կենդանի երեխա ոչ ոք դեռ չէր տեսել։ Եվ իրոք, դեռ հարմար անուն չէին գտել նրան, երբ բարուրից դուրս թռավ ու սկսեց վազվզել տան մեջ։ Երեկոյան նրան քնեցնում էին, իսկ առավոտյան պարզվում էր, որ մահճակալը կարճ է տղայի համար ու ոտները դուրս են ցցվել։

— Երևում է, նա ուզում է շուտ մեծանալ, որ ընտանիքին, ինչքան կարելի է, շուտ օգնի,— ասում էր հայրը։

Երեկոները, երբ նրան քնեցնում էին, ամեն ինչ կարգին էր լինում, իսկ առավոտյան տեսնում էին, որ հագուստն արդեն նրան պետք չի գալիս,

Սկիզբը՝ նախորդ համարում։

կոշիկները սեղմում՝ են ոտները, իսկ շապիկները բոլորովին հագնել չի կարելի։

— Ոչի՛նչ, — ասում էր նրա մայրը, — բարեբախտաբար հնոտեվաճառի տանը չուլ ճարելը դժվար չէ։ Ես նրան նոր շապիկ կկարեմ։

Մի շաբաթում Բենվենուտոն այնքան մեծացավ, որ հարևաններն սկսեցին խոսել, թե դպրոց տանելու ժամանակը հասել է։

Հնոտեվաճառի կինը տղային տարավ ուսուցչի մոտ, իսկ սա լուրջ զայրացավ։

— Իսկ ինչո՞ւ հարկ չհամարեցիք ուսումնական տարվա սկզբին բերել։ Չէ՞ որ շուտով զատիկը կլինի, ինչպե՞ս կարող եմ ընդունել նրան։

Երբ մայրը բացատրեց, որ Բենվենուտոն յոթ օրվա ծնված է ընդամենը, ուսուցիչն ավելի ջղայնացավ։

— Յոթ օ՞ր... սինյորա, սա ձեզ համար մսուր չէ։ Վեց տարի հետո եկեք, այն ժամանակ ձեզ հետ կխոսենք։

Սակայն նա վերջապես հայացքը դասամատյանից կտրեց և տեսավ, որ Բենվենուտոն նույնիսկ ավելի բարձրահասակ է, քան իր բոլոր աշակերտները։ Նա տղային նստեցրեց ամենավերջին նստարանին և սկսեց բացատրել, որ երկու անգամ երկու հավասար է չորսի։

Կեսօրին զանգը տվեց, բոլոր աշակերտները տեղերից վեր թռան ու շարք կանգնեցին, որպեսզի դասարանից դուրս գան։ Մենակ Բենվենուտոն տեղից չէր շարժվում։

— Բենվենո՛ւտո, — ձայն տվեց նրան ուսուցիչը, — դու էլ շարք կանգնիր։

— Չեմ կարող, սինյոր ուսուցիչ։

Եվ իրոք, առավոտյան ժամը ութից մինչև տասներկուսը նա այնքան էր մեծացել, որ նստարանից վեր կենալ չէր կարողանում։ Ստիպված կանչեցին դպրոցի պահակին, որպեսզի սա օգնի Բենվենուտոյին վեր կենալ։

Մյուս օրը նրան նստեցրին ավելի մեծ նստարանի, բայց կեսօրին Բենվենուտոն նորից չկարողացավ վեր կենալ, որովհետև այդ նստարանն էլ նրա համար արդեն փոքր էր։ Նա նմանվում էր թակարդի մեջ ընկած մկան։ Ստիպված ատաղձագործ կանչեցին, որ նստարանը քանդի։

Ուսուցիչը ծոծրակը քորելով ասաց.

— Վաղը մենք հինգերորդ դասարանից ավելի մեծ նստարան կվերցնենք։

Եվ նա կարգադրեց դասարան բերել ամենամեծ նստարաններից մեկը։

— Իսկ հիմա ինչպե՞ս է։

— Շատ հարմար է, — ուրախ պատասխանեց Բենվենուտոն։

Եվ որպեսզի ցույց տա, թե որքան հարմար է նստարանն իր համար, նա մի քանի անգամ տեղից վեր կացավ ու նորից նստեց։



Բայց երբ կեսօրին զանգը խփեց, այդ նստարանն էլ այնքան փոքր էր, որ նորից ատաղձագործ կանչեցին։

Դպրոցի դիրեկտորն ու քաղաքագլուխն սկսեցին բողոքել։

— Այս ի՞նչ բան է, սինյոր ուսուցիչ։ Դուցե դուք դասարանում կարգապահություն պահպանելը մոռացե՞լ եք։ Նստարաններն այս տարի ձեզ մոտ այնպես են կոտրվում, կարծես ծղոտից շինված լինեն։ Դուք պետք է ավելի ուշադիր հետևեք ձեր թոկից փախածներին, թե չէ մենք չենք կարող ամեն օր մի նոր նստարան գնել։

Հնոտեվաճառը, սարսափած, տղային տարավ քաղաքի ամենալավ բժշկի մոտ և նրան ամեն ինչ պատմեց։

— Տեսնե՞նք, տեսնե՞նք,— ասաց բժիշկը և ակնոցները դրեց, որպեսզի ավելի լավ տեսնի։

Նա Բենվենուտոյին ոտից գլուխ չափեց ու ասաց.

— Հիմա նստի՛ր։

Բենվենուտոն նստեց աթոռին, իսկ բժիշկը մի րոպե սպասելուց հետո հրամայեց.

— Վե՛ր կաց։

Բենվենուտոն աթոռից վեր կացավ, և բժիշկը նորից նրան չափչփեց։

— Հը՛մ,— ասաց նա, ակնոցի ապակիները թաշկինակով սրբելով,— ապա նորից նստի՛ր։

Նա մի քանի անգամ Բենվենուտոյին ստիպեց նստել ու վեր կենալ և վերջապես ասաց.

— Շատ հետաքրքիր երևույթ է։ Այս տղան մի նոր հիվանդություն ունի, որը մինչև այժմ ոչ ոքի հայտնի չէ։ Հիվանդությունն արտահայտվում է հետևյալ կերպ. երբ տղան նստում է, սկսում է շատ արագ ծերանալ։ Նրա համար մի րոպեն հավասար է մի ամբողջ օրվա։ Ինչպե՞ս բուժել նրան։ Նա պետք է պարզապես միշտ ոտքի վրա լինի, թե չէ մի քանի շաբաթում սպիտակամորուք ծերունի կդառնա։

Բժշկի եզրակացությունից հետո Բենվենուտոյի կյանքը հիմնովին փոխվեց։

Դպրոցում նրա համար հատուկ նստարան պատրաստեցին, որը նստելու տեղ չուներ։ Այդպես էին արել, որպեսզի հանկարծ Բենվենուտոն չփորձի նստել։ Տանը հիմա նա ստիպված էր կանգնած ուտել։ Բավական է, որ փորձեր նստել վառարանի մոտ, այս ու այն կողմից ձայն էին տալիս.

— Լսի՛ր, դու, ի՞նչ է, ուզում ես ժամանակից շու՞տ ծերանալ։

— Վե՛ր կաց, վե՛ր կաց, ուզում ես, որ մազերդ սպիտակե՞ն։

«Բայց նա մահճակալի վրա՞ էր քնում»— կհարցնեք դուք։ Մահճակալի մասին նա մտածել էլ չէր կարող, քանի որ չէր ուզում առավոտյան արթնանալ ճերմակ մորուքով։ Բենվենուտոն ստիպված



էր սովորել ձիու նման կանգնած քնել. ահա թե ինչու հարևանները և բարեկամները «Ձիուկ քնող Բենվենուտո» անունը տվեցին նրան, որը այդպես էլ պինդ կպավ Բենվենուտոյին։

Մի անուշ օր հնոտեվաճառ հայրը ծանր հիվանդացավ և ընկավ անկողին։

— Բենվենուտո,— ասաց նա ընդմիշտ աչքերը փակելուց առաջ,— հիմա դու պետք է մայրիկին օգնես։ Նա պառավել է և չի կարող աշխատել։ Մի որևէ ազնիվ գործով զբաղվիր։ Չէ՞ որ դա քեզ համար ոչ մի դժվարություն չի ներկայացնում։ Աշխատելով դու միշտ երիտասարդ կմնաս, քանի որ նստելու հնարավորություն չես ունենա։

Հաջորդ օրը, հոր թաղումից հետո, Բենվենուտոն գնաց աշխատանք փնտրելու, բայց նրա վրա սկսեցին ծիծաղել.

— Քեզ աշխատա՞նք։ Որդյակ, դու ի՞նչ ես մտածում, մենք լարեղ տիկնի՞կ ենք խաղում, ի՞նչ է։

Դու դեռ շատ փոքր ես գործարանում աշխատելու համար։

— Դու ուզում ես աշխատե՞լ, եթե մենք քեզ ընդունենք աշխատանքի, տուգանքի կենթարկվենք։ Մանուկներին արգելված է աշխատել։

Բենվենուտոն նրանց հետ չէր վիճում, բայց միաժամանակ համառորեն մտածում էր, թե ինչպես դուրս գա այդ վիճակից։

Նա գնաց տուն, նստեց հայելու առաջ ու սկսեց սպասել.

— Բժիշկն ասում էր, որ եթե ես նստեմ, արագ կսկսեմ ծերանալ։ Տեսնենք ճի՞շտ էր ասում նա։



Մի քանի բոպեից հետո նկատեց, որ սկսում է մեծանալ, որ կոշիկներն սկսում են ոտները սեղմել։ Նա կոշիկները հանեց և սկսեց նայել, թե ինչպես են ոտքերը մեծանում։ Հետո նորից նայեց հայելու մեջ և սկզբում շատ զարմացավ։

— Հետաքրքիր է, ո՞վ է այս սև բեղերով պատանին, որ նայում է ինձ։ Ինձ թվում է, թե ինչ-որ տեղ արդեն տեսել եմ նրան։

Վերջապես նա հասկացավ ու սկսեց ծիծաղել.

— Ա՜, այդ ես եմ։ Իրոք, որ ես արագ մեծացել եմ։ Դե, իսկ հիմա, հարկավոր է շուտ ոտքի կանգնել, թե չէ այնքան էլ չեմ ուզում ծերանալ։

Կարո՞ղ եք պատկերացնել, թե ինչքան զարմացավ նրա մայրը իր առաջ տեսնելով երկարահասակ, լայնաթիկունք ու բեղավոր պատանուն։

— Բենվենու՜տո, որդիս, այդ ինչքա՞ն ես փոխվել։

— Ավելի լավ, մայրիկ։ Ա՛յ կտեսնես, հիմա ես արդեն աշխատանք կճարեմ։

Եվ թողնելով աշխատանք ընտրելը, նա մարագից հանեց նոր սայլակն ու գնաց քաղաքի փողոցներում ման գալու։

— Հի՜ն շո՜ր, հի՜ն կոշի՜կ,— երգում էր նա։

Նրա ուժեղ ձայնը լսելով, հարևանները գլուխները դուրս էին հանում դռներից և ասում.

— Ի՜նչ սիրուն երիտասարդ է։ Որտեղի՞ց եք դուք,— հարցնում էին նրանք։

— Տիտիկ չանող Բենվենուտո, այդ դու՞ ես։

— Ես եմ, մորաքույր։ Կարող եք չկասկածել։ Նստած տեղս քնել էի և արթնացա բեղերով։

Այսպես Բենվենուտոն սկսեց աշխատել։ Բոլորը սիրում էին նրան։ Միշտ ոտքի վրա, միշտ շարժման մեջ, միշտ պատրաստ ուրիշներին օգնելու, միշտ որևէ գործով զբաղված՝ նա չէր կարող մարդկանց դուր չգալ։ Մի անգամ նույնիսկ նրան ուզում էին քաղաքագլուխ դարձնել։

— Մեզ հենց այդպիսի մարդ է հարկավոր ինչպես դու, որպեսզի քաղկաթոռին շատ չնստի...

Բայց Բենվենուտոն հրաժարվեց այդ առաջարկությունից։

Մի քանի տարի հետո... մեռավ նրա մայրը։

«Հիմա ես մնացի մեն-մենակ,— մտածեց Բենվենուտոն։— Միևնույն է, ես պարապ նստել չեմ կարող, արագ կծերանամ։ Արի գնամ աշխարհը

ման գամ, տեսնեմ ինչ կա, ինչ չկա»։

Ասաց ու արավ։ Վերցրեց նա հոր սայլակն ու գնաց աշխարհ տեսնելու։ Նա կարող էր ամբողջ օրեր ու գիշերներ քայլել, դրա համար էլ շատ բան էր տեսնում և զրուցում էր տարբեր մարդկանց հետ։

— Ի՞նչ հաճելի երիտասարդ եք,— ասում էին նրան։— Նստեք մի քիչ զրույց անենք։

— Զրուցել կանգնած էլ կարելի է,— պատասխանում էր Բենվենուտոն։

Այսպես նա թափառում էր աշխարհում և բոլորովին չէր ծերանում։

Մի անգամ, մի հյուղակի մոտից անցնելիս այնպիսի տեսարան բացվեց նրա առաջ, որ խեղճի սիրտը կուչ եկավ։ Անկողնում պառկած էր մի հիվանդ կին, իսկ կողքին ու հատակին նստած էին մի խումբ երեխաներ ու լալիս էին մեկը մյուսից բարձր ձայնով։

— Երիտասարդ,— դիմեց կինը, նկատելով Բենվենուտոյին,— եթե զբաղված չեք, մի րոպեով ներս եկեք, ես տեղիցս շարժվել չեմ կարողանում, որպեսզի երեխաներին հանգստացնեմ, իսկ նրանց արցունքի ամեն մի կաթիլը դանակ է սրտիս մեջ։

Բենվենուտոն մտավ սենյակ, երեխաներից մեկին վերցրեց գիրկը և, սենյակում ետ ու առաջ շարժվելով, սկսեց օրոր ասել նրան։ Այսպես նա հանգստացրեց նաև մյուսներին։ Միայն ամենափոքրը ոչ մի կերպ ձայնը չէր կտրում։

— Մի րոպեով նստեք,— խնդրեց կինը։— Եթե դուք նստեք, նա անմիջապես կքնի։

Բենվենուտոն մոտեցավ վառարանին, նստեց նրա մոտ դրված աթոռի վրա, և երեխան իսկույն քնեց։

— Շատ շնորհակալ եմ, որդիս,— ասաց կինը։— Եթե դու չլինեիր, ես ինձ կկորցնեի, այնքան հուսահատվել էի։

Դուրս գալիս Բենվենուտոն պատահմամբ նայեց հայելուն և նկատեց, որ մազերը սկսել են սպիտակել։ «Իսկ ես բոլորովին մոռացել էի, որ երբ նստում եմ, սկսում եմ արագ ծերանալ» — մտածեց Բենվենուտոն, բայց նայելով քնած երեխաներին՝ գոհ սրտով հեռացավ։

Մի ուրիշ անգամ գիշերը մի փոքրիկ գյուղի միջով անցնելիս նա լուսավորված մի պատուհան տեսավ։ Ներսում ճախարակի առաջ նստած էր մի աղջիկ. նա աշխատում էր ու հառաչում։

— Ի՞նչ է պատահել,— հարցրեց Բենվենուտոն։

— Արդեն երեք օր է ես չեմ քնում։ Ես պետք է վաղը անպայման աշխատանքը վերջացնեմ։ Եթե չվերջացնեմ, ինձ ոչ մի կոպեկ փող չեն տա և մեր ընտանիքը կմնա քաղցած։ Բացի այդ, կարող են ճախարակն ինձանից վերցնել։ Իսկ ես այնպես քնել եմ ուզում, որ աշխարհում ամեն ինչ կտայի, միայն թե կես ժամ քնեի։

«Կես ժամը, դա ընդամենը երեսուն րոպե է,— մտածեց Բենվենուտոն,— արի ես մի կես ժամ աղջկա փոխարեն աշխատեմ»։

— Լսեցեք,— ասաց նա,— պառկեք քնելու, ես ձեր փոխարեն մի քիչ կաշխատեմ։

Աղջիկը պառկեց թախտին ու կատվի նման անմիջապես քնեց։ Բենվենուտոն նստեց ճախարակի մոտ ու սկսեց աշխատել, բայց այդպես էլ այլևս



սիրտ չարեց, որ աղջկան արթնացնի։ Ամեն անգամ, երբ նայում էր աղջկա կողմը, թվում էր, թե նա շատ գեղեցիկ երազներ է տեսնում։

Եվ ահա սկսեց լուսանալ, արևը բարձրացավ և աղջկան արթնացրեց։

— Աստված իմ, ես ամբողջ գիշերը քնել եմ, իսկ դուք աշխատել եք:

— Ոչի՜նչ, ոչի՜նչ, աշխատանքը շատ հետաքրքիր է:

— Իսկ ձեր գլուխն ամբողջովին փոշի է դարձել:

«Ո՞վ գիտի, թե որքան եմ ծերացել այս գիշեր» — մտածեց Բենվենուտոն, բայց դրանից բոլորովին էլ չդժգոհեց:

Եվ այդպես ամեն անգամ, երբ ուզում էր որևէ մեկին օգնել և ստիպված էր լինում նստել, մեր Բենվենուտոյի մազերը սպիտակում էին: Հետո մեջքն էլ սկսեց կռանալ այնպես, ինչպես ծառերն են թեքվում ուժեղ քամուց: Աչքերն էլ այնքան պարզ չէին տեսնում, ինչպես առաջ: Տիտիկ չանող Բենվենուտոն ավելի ու ավելի էր ծերանում, և վերջապես նրա մազերը բոլորովին սպիտակեցին: Ովքեր նրան լավ ճանաչում էին, ասում էին միշտ.

— Ինչ օգուտ ունես, որ մարդկանց լավություն ես անում: Եթե միայն քո մասին մտածեիր, դու հիմա էլ ծտի նման կթռչկոտեիր:

Բայց Տիտիկ չանող Բենվենուտոն ուրիշ կարծիքի էր. նրա ամեն մի սպիտակ մազը հիշեցնում էր մի որևէ լավ արարք: Էլ ինչու պիտի զղջար:

— Դու կկարողանայիր քո կյանքը քեզ համար պահպանել, փոխանակ այն կամաց-կամաց ուրիշներին բաժանելու,— ասում էին հարևանները:

Բայց Բենվենուտոն ժպտալով գլուխն օրորում էր ու մտածում, որ իր ամեն մի սպիտակ մազը մի նոր բարեկամ է իրեն նվիրել և ինքը հազարավոր բարեկամներ ունի աշխարհի բոլոր կողմերում:

Իսկ դուք շա՞տ բարեկամներ ունեք, դուք կուզենայի՞ք այդքան շատ բարեկամներ ունենալ:

Բացի այդ, ամեն տեղ ման գալով, Բենվենուտոն երբեք չէր հոգնում թեև նա հիմա ստիպված էր հենվել գավազանին և հաճախ կանգ էր առնում շունչ քաշելու համար:

Այսպես թափառելով, նա ընկավ Խաբեբաների աշխարհը, որտեղ նա հոր նման դարձավ հնավաճառ:

— Դուք այդքան շատ երկրներում եք եղել,— նրա պատմությունն ընդհատելով ասաց Կաղլիկ-կատուն,— մի՞թե չէիք կարող ավելի լավ տեղ ընտրել ձեզ համար:

Տիտիկ չանող Բենվենուտոն ժպտում էր:

— Հենց այստեղ են մարդիկ օգնության կարիք զգում: Սա անպայման աշխարհի ամենադժբախտ երկիրն է և դրա համար էլ ամենահարմար տեղը ինձ համար:

— Ահա՛ ճիշտ ուղին,— բացականչեց Ջելսոմինոն, որը ծերունուն լսում էր արցունքն աչքերին: —Հիմա ես գիտեմ, թե իմ ձայնով ինչեր կանեմ: Փոխանակ ման գամ ամբողջ աշխարհը և ամեն ինչ քարուքանդ անեմ, ես կաշխատեմ, որպեսզի իմ ձայնը մարդկանց ուրախություն բերի:

— Այդ քեզ համար այնքան էլ ճիշտ չի լինի,— նկատեց Կաղլիկ-կատուն:— Օրինակ, եթե դու փորձես երեխաներին օրորոցային երգ երգել, ընդհակառակը, կխանգարես, որ նրանք քնեն:

— Բայց երբեմն կարելի է նաև քնած մարդկանց արթնացնելով բարի գործ կատարել,— սիրալիր ասաց Բենվենուտոն:

— Ես այդ խնդիրը կլուծեմ,— բռունցքը հատակին խփելով ասաց Ջելսոմինոն:

— Իսկ հիմա,— նկատեց Կաղլիկը,— նախ պետք է բուժես քո ձայնը:

Եվ իրոք Ջելսոմինոյի ձայնը քանի գնում ավելի էր ուռչում, և նա արդեն ո՛չ կարողանում էր կանգնել և ո՛չ էլ քայլել: Որոշվեց մինչև առողջանալը նրան թողնել Բենվենուտոյի տանը: Մանավանդ որ Տիտիկ չանող Բենվենուտոն բոլորովին չէր քնում և գիշերները կարող էր հետևել Ջելսոմինոյին, որպեսզի սա նորից երազում չերգեր և ոստիկանության ուշադրությունը չգրավեր:

(Շարունակելի)

## ՍԱՔՈՅԻ ՊԱՅՈՒՍԱԿԸ

ՎԱԶԳԵՆ ՏԱԼՅԱՆ

Կանթը պոկված պայուսակով,
Կողքը ճղված, աստառը՝ դուրս,
Միշտ դպրոց էր գալիս Սաքոն,
Դասարան էր մտնում սուս-փուս։

Աջ էր նայում, ծայր էր խնդրում,
Ձախ էր դիմում՝ մի քիչ թանաք,
Առջևինին պարտադրում,
Թե՝ մատիտ տուր, սրիչ, դանակ...

Մեկ էլ կասեր.—Ի՞նչ մեծ բան է,
Մի հասարակ ծծողական...
Բա ընկերը ո՞ր օրվան է.
Օգնություն չի՞ ընկերական...

Ընկերները օրվան մի օր
Խոսք մեկ արին՝ ոչինչ չտալ,
Անգամ սրիչ թե՛ հին, թե՛ նոր...
Ու մեր Սաքոն սկսեց լալ։

Բայց թե չօգնեց ողբ ու արցունք.
Որոշված էր՝ պրծավ գնաց.
Ու մի տեսեք, թե ի՜նչ արդյունք...
Այն ուզվորից հետք չմնաց։

Հասկացել էր արդեն Սաքոն.
Աշակերտ է, բաղեղ հո չի՞,
Ապրի ուրիշ պայուսակով,
Տզրուկի պես մարդկանց կպչի։



Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ

## Քամին և արևը

Քամին մի անգամ
Ասաց արևին.
— Ինչո՞ւ ես այդքան
Սիրում տերևին,
Միշտ ջերմ ես նայում,
Գուրգուրո՛ւմ, շոյում...
Իսկ տերևը հեզ
Չի հատուցում քեզ։

Արևը ասաց.
— Ինձ համար նույնն է...
Բարություն անելն
Իմ բնությունն է։

ՆԱԶԱՐԵԹ ԿԻՐԱԿՈՍՅԱՆ
(Ախալքալաքի, գյուղ Տարցի)

## ԴԺԳՈՀ ԽՈԶԸ

ՀՈՎՀԱՆՆԵՍ ԱՆԴՐԵԱՍՅԱՆ

Խոզը ուտում էր, փքվում,
Նրան այնպես էր թվում,
Թե աշխարհը բովանդակ
Լոկ ճաշ է ու կարկանդակ։
Բայց դժգոհ էր ողջ օրը,
Մրթմրթում էր ու լալիս,
Եվ ասում էր նա մորը.
— Աշխարհն ինձ դուր չի գալիս։

## Տեղափոխություն



Մի պրոֆեսոր օր ու գիշեր, աշխատում էր տանը։ Աշխատելու համար նրան պետք էր հանգստություն։ Պրոֆեսորն ուներ երկու հարևան։ Աջ կողմի հարևանը փականագործ էր, իսկ ձախ կողմինը՝ ատաղձագործ։ Նրանք նույնպես աշխատում էին տանը, աղմուկ բարձրացնում և խանգարում էին պրոֆեսորին։

Պրոֆեսորի համբերությունը հատավ։ Նա գնաց հարևանների մոտ և խնդրեց, որ տեղափոխվեն նոր բնակարան։

Պրոֆեսորը խոստացավ բոլոր ծախսերը ինքը հոգալ և հետն էլ նվեր տալ՝ միայն թե տեղափոխվեն։ Հարևանները համաձայնվեցին, որ կտեղափոխվեն։

Մի քանի օրից հետո փականագործը և ատաղձագործը եկան պրոֆեսորի մոտ, որպեսզի ստանան խոստացած նվերը։

Պրոֆեսորը հարցրեց.

— Իսկ այժմ դուք որտե՞ղ եք ապրում։

— Միևնույն շենքում,— պատասխանեց ատաղձագործը,— ես ապրում եմ փականագործի բնակարանում, իսկ փականագործը՝ իմ բնակարանում։

Գերմաներենից թարգմ. ԲԱԳՐԱՏ ՄԱՆՎԵԼՅԱՆ

## ՏԱՏԻԿԻ ՊԱՏԱՍԽԱՆԸ

ՊԱՏՎԱԿԱՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ

Որդի, գիրդ երբ ստացա,
Ինչ թաքցնեմ, շատ վշտացա։
Քանի օր է ակնոց դրել,
Չեմ ջոկում, թե ինչ ես գրել,
Չեմ տեսնում ես կարգին մի բառ,
Մի սիրունիկ մեսրոպատառ։
Ախր, որդի, ի՞նչ գիր է դա,
Գյուղում անգամ մարդ չգտա,
Որ գրածից քո անճոռնի
Գոնե մի կերպ գլուխ հանի։
Մնում է, որ վեր կենաս գաս
Եվ նամակդ ինքդ կարդաս։

## Արտասահմանյան հումոր

ՆԻՔ — Պապա, ինչու՞ է այսօր այսպես ցուրտ։
ՀԱՅՐԸ — Ցուրտ է, որովհետև ձյուն է գալիս։
ՆԻՔ — Իսկ ինչու՞ է ձյուն գալիս։
ՀԱՅՐԸ — Դե, ձյուն է գալիս, որովհետև ձմեռ է։
ՆԻՔ — Իսկ ինչո՞ւ է ձմեռ, ինչո՞ւ է...

— Ախ, Նի՛ք, Նի՛ք,—սրտնեղած ընդհատում է հայրը,—ես քեզ պես հորս շատ հարցեր չէի տալիս, երբ երեխա էի։

— Դրա համար էլ չես կարողանում պատասխանել իմ հարցերին։

* * *

— Ինչո՞ւ չես լվացվել առավոտյան, Թոմ։ Ես կարող եմ նույնիսկ ասել, թե ինչ ես կերել այսօր։

— Ի՞նչ։

— Ձու։

— Ճիշտ չէ, դա երեկ էր։

* * *

Ֆրանսիայում գտնվելու ժամանակ մի օր Մարկ Տվենը գնացքով գնում էր Դիժոն քաղաքը։ Նա շատ հոգնած էր և ուզում էր քնել։ Դրա համար էլ մոտեցավ կոնդուկտորին և խնդրեց իրեն արթնացնել, հենց որ գնացքը մոտենա Դիժոնին։

— Ես գուցե դիմադրեմ,— զգուշացրեց մեծ գրողը,—բայց ոչ մի ուշադրություն չդարձնեք։ Իջեցրեք ինձ գնացքից, ինչպես ուզում եք։

Եվ Մարկ Տվենը գնաց քնելու։

Երբ նա արթնացավ, արդեն գնացքը հասնում էր Փարիզ։

Մարկ Տվենը անմիջապես հասկացավ, որ կոնդուկտորը մոռացել է իրեն արթնացնել։ Նա շատ ջղայնացավ։

— Ես երբեք այսքան չէի բարկացել իմ ամբողջ կյանքում,—ասաց նա կոնդուկտորին։

— Բայց ձեզնից ավելի շատ բարկացավ այն ամերիկացին, որին ես մի կերպ իջեցրի Դիժոնում,—պատասխանեց կոնդուկտորը։

Անգլերենից թարգմ.
ՍԻՄԱ ԽԱՍԱՊԵՏՅԱՆ

Նկ. ՄԱՐՏԻՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ



Կենտրոնի այս երկու թերթը, որտեղ տպագրված է Համո Սահյանի «Կարմիր շունը» պատմվածքը, զգուշությամբ պոկեք ամսագրից, էջացույցերի օգնությամբ ծալեք երկու անգամ և կտրեք։ Դուք կստանաք մի փոքրիկ գրքույկ։



# ԴԱՐԲԻՆ ԷՆՐԻԿԸ

(Ֆրանսիական հեքիաթ)

*Պոն-դե-Պիլ ավանում ժամանակով ապրում էր մի դարբին։ Իհարկե, մեր կողմերում երկաթ շատ կա, և դրա համար էլ դարբինները շատ էին։ Բայց դարբին Էնրիկը համարվում էր ամբողջ Գասկոնի ամենալավ դարբինը։ Անտառահատները գալիս էին հեռավոր վայրերից՝ կացիններ պատվիրելու։ Նրա պատրաստած սուսերով կարելի էր քար ծակել։ Ինչպիսի՜ խոփեր էր կռում գութանների համար, ինչպիսի՜ փականքներ էր պատրաստում նա, գաղտնիքավոր փականքներ, հապա բարակ ու դիմացկուն ասեղնե՜րը։*

*Հարևան ավանն էլ ուներ իր դարբինը։ Միաչքանի Գաստոն էին ասում նրան։ Երբ նա դեռ բոլորովին փոքր տղա էր, երկաթի մի կտոր էր ընկել ձախ աչքը և կուրացրել նրան։ Այն ժամանակ նա և Էնրիկը միասին սովորում էին նույն վարպետի մոտ։*

*Գաստոն լավ դարբին դարձավ, ոչինչ ասել չի կարելի, բայց նա Էնրիկին չէր հասնում։ Գաստոնին դուր չէր գալիս, երբ մարդիկ գովում էին Էնրիկին, նրա աշխատանքը, վարպետությունը։ Արժեքի մասին էլ չէին խոսում. մարդիկ գնում էին այնտեղ, որտեղ ավելի լավ էին պատրաստում։ Բացի այդ, Էնրիկը չէր ցանկանում աղքատների հաշվին հարստանալ և դրա համար էլ էժան էր վաճառում։*

*Քանի գնում Միաչքանու գործերը վատանում էին, գնորդները պակասում։*

*Այդ ամենը վերջացավ նրանով, որ երկու բարեկամները լուրջ կերպով ընդհարվեցին։ Դեպքը պատահեց կիրակի օրը, երևի մի քիչ ավել էին խմել, խոսք խոսքի հետևից և հանկարծ... Գաստոն բռունցքով խփեց սեղանին ու ճչաց.*

*— Աշխատա՞նք, աշխատա՞նք, ի՞նչ ես հպարտանում քո աշխատանքով։ Ես հո գիտեմ, թե ինչու են քո պատրաստած սուսերները քար ծակում, ինչու են քո սարքած գութանները այդպես լա՜վ վարում, ինչու են քո պատրաստած հողմացույցները միշտ լավ եղանակ ցույց տալիս։ Զարմանալու ոչինչ չկա, արժե միայն հիշել, թե ով է քեզ սովորեցրել։*

*— Ո՞վ է սովորեցրել, նույն վարպետը, որը նաև քեզ է սովորեցրել։ Նույն փուքսն էր մեր կրակ*

## ՊԱՐԾԵՆԿՈՏ ՃՈՒՏԻԿԸ

Գործի գնալուց առաջ մայր-հավիկը ասաց իր որդի Կարմրավկիկին.

— Եղբայրներիդ ու քույրերիդ հետ կխաղաս: Առաջվա նման մենակ չփախչես։

Հենց որ մայրիկը ոտքը քաշեց տանից, Կարմրավկիկն արդեն հեռու էր քույրերից ու եղբայրներից:

Ճանապարհին Կարմրավկիկը հանդիպեց բադիկին ու հարցրեց.

— Այդ ո՞ւր ես գնում, բադիկ:

— Ես գետն եմ գնում:

— Հիանալի է: Արի միասին գնանք։

Նրանք գնացին դեպի գետը: Բադիկը ցատկեց ջուրը, լողում է, սուզվում և հարցնում Կարմրավկիկին.





*Թեժացնում, նույն գնդանին էինք խփում ես ու դու...*

*— Սովորելու մեջ տարբերություն շատ կա։ Ես ամեն ինչ գիտեմ։*



*— Դե՛հ, դե՛հ, այդ ի՞նչ է, որ դու գիտես, ասա ես էլ իմանամ։*

*— Գուցե կասես, որ սրանից երեք-չորս տարի առաջ դու միշտ տանն էիր և ոչ մի օր չէիր բացակայում, չէիր կորչում ամիսներով։ Ո՞ւր էիր գնում։*

*— Դրա մեջ ոչ մի գաղտնիք էլ չկար։ Գուրդոն քաղաքում ապրում է իմ մորաքույրը, հիվանդացավ, գնացի նրան տեսնելու։*

*— Ասում ես մորաքույր ունե՞ս,— բթի տակ ծիծաղեց Գաստոն,— Գուրդոնում միայն քո մորաքույրը չի ապրում, այնտեղ ուրիշ բաներ էլ կան։ Ես նույնիսկ կարող եմ քեզ ասել, թե ինչ կա Գուրդոնում, ավելի ճիշտ՝ Գուրդոնից քիչ հեռու, կա մի հոր, որ կոչվում է Պադիրակ։ Դու այդ հորն էիր իջնում, իջնում էիր մինչև հատակը, սատանաների դարբնոցը։ Այնտեղ էլ դու սովորեցիր քո արհեստը։ Ես գիտեմ դու ով ես, դու կախարդ ես։*

*Էնրիկը ուսերը վեր քաշեց։*

*— Դե լա՛վ, լա՛վ, ավելի լավ է գնամ քնեմ, քան այդպիսի հիմարություններ լսեմ։*

*Էնրիկը գնաց և դրանով էլ ամեն ինչ վերջացավ...*

*Օ ո՛չ, չվերջացավ։ Այն ժամանակներում մարդիկ հավատում էին սատանաներին, կախարդներին և ամեն տեսակի այդպիսի դատարկ բաների։ Նույնիսկ գոյություն են ունեցել հատուկ դատարաններ, կախարդների դատարաններ, որտեղ դատում էին կախարդներին։ Գաստոն պարզապես դատարկախոսել էր, որպեսզի բարկացնի իր բարեկամին և չէր մտածել հետևանքների մասին, բայց խոսքը թևեր ունի, թռավ՝ էլ բռնել չես կարող։ Մեկն ասում է, մյուսը կրկնում, երրորդը՝ մի քիչ ավելացնում. կախարդ է, կախա՛րդ...*

*Եվ ահա, թե ինչ ստացվեց դրանից։ Մարդիկ սկսեցին ծուռ աչքով նայել Էնրիկին, նույնիսկ հանդիպելիս խույս էին տալիս։ Սկզբում դարբինը ծիծաղում էր մարդկանց վրա, հետո չափն անցավ, այլևս ծիծաղելու բան չէր։ Շուտով նա հասկացավ ամեն ինչ, մռայլվեց ու մեկուսացավ։ Նա գեղեցիկ*

---

**— Իսկ դու լողալ գիտե՞ս, ցատկիր այստեղ՝ ինձ մոտ։**

**— Արդյո՜ք լողալ գիտեմ։ Նույնիսկ քեզանից էլ լավ։**

**Վազեց Կարմրավզիկը և, շրըմփ, ջրի մեջ։ Սակայն պարզվեց, որ այնքան էլ հեշտ չէ անել այն, ինչ չգիտես։ Կարմրավզիկը բղավում է.**

**— Օգնեցե՛ք, փրկե՛ք, խեղդվո՛ւմ եմ... կը՜լ..., խեղդվո՛ւմ եմ...**

**Բադիկը արագ լողաց խեղդվող ճուտիկի մոտ, կտուցով բռնեց գլխից ու դուրս քաշեց ափ։**

**Վախից դողում է Կարմրավզիկը, կտուցն անգամ բաց անել չի կարողանում։**

**Բադիկն օգնեց պարծենկոտին փետուրները մաքրել և խորհուրդ տվեց.**

**— Մի՛ պարծենա այլևս։ Եթե լողալ չգիտես, ասա, որ չգիտես, թե չէ կկորչես։**





տղամարդ չէր, ածղաճա էր, մազերը սև, մորուքը երկար, իսկ հիմա, երբ չորս կողմից նեղացնում էին նրան, նա ավելի սարսափելի էր դարձել: Հիմա ոչ ոք չէր մտնում դարբնոց, կանգնում էին շեմքին, վախենալով, թե հանկարծ սատանան կարող է գալ իր աշակերտին տեսության և հետո...

Շուտով Էնրիկի երկու օգնականները թողեցին նրան ու հեռացան: Ինչպե՞ս կարելի է մենակ աշխատել. հնարավոր չէ միաժամանակ և՛ գնդանին խփել, և՛ փուքսը փչել: Մի անգամ, երեկոյան, Էնրիկը մտածում էր այն մասին, թե ինչ կարելի է անել. հանկարծ լսեց, որ պատուհանը թակում են: Զարմացավ դարբինը, որը ցերեկով մարդիկ վախենում էին իրենից, ուրեմն ո՞վ կլինի: Գնաց դուռը բացելու, իսկ դռան հետևում մի երեխա էր կանգնած, հազիվ տասը տարեկան: Աչքերն աշխույժ, մազերը գզգզված, կեցվածքը հպարտ, չնայած բրբրված հագուստը ծվենը-ծվենը կախված էր վրան:

— Ի՞նչ ես ուզում,— հարցրեց դարբինը:

— Ուզում եմ ձեր աշակերտը լինել:

— Աշակե՞րտ,— զարմացած քմծիծաղ տվեց Էնրիկը,— դու, ի՞նչ է, երևի չգիտե՞ս, որ կախարդի մոտ ես եկել:

— Գիտեմ, ինձ ասել են: Ի՞նչ կա որ, ամեն մարդ չի կարող իր արհեստում կախարդ, հրաշագործ լինել: Ես դեմ չեմ դրան:

Նորից քմծիծաղ տվեց դարբինը, բայց այս անգամ առանց զայրանալու: Նա տղային ներս հրավիրեց:

— Անունդ ի՞նչ է,— հարցրեց Էնրիկը:

— Անունս Ժանն է:

— Ի՞նչ արած, Ժան, այնքան հեշտ բան չի կախարդի աշակերտ լինելը: Նախ պետք է տեսնեմ, թե ինչ կարող ես անել: Ապա մի ուժդ ցույց տուր:

Էնրիկը մի մեծ քար բերեց, որը նա դեմ էր անում դարբնոցի դռանը, դրեց գնդանի վրա:

— Ապա, այնպե՛ս խփիր այս քարին, որ նրանից ջուր թափվի,— ասաց նա:

Ժանն բոլորովին չվախեցավ:

— Կարծես թե մեծ բան է: Առավոտյան այնպիսի ուժեղ անձրև էր գալիս, որ բոլոր քարերն էլ սպունգի նման փափկել են, երևան էլ կարող

## ԱԳԱՀ ՎԱԳՐԸ

Զբոսնում էր վագրը ջունգլիներում: Հանկարծ նրա առջևից փախավ նապաստակը: Վագրը վազեց նրա հետևից, սպառնագին գոռալով.

— Հեյ, նապաստակ, ես քեզ կուտեմ հիմա:

Բայց հանկարծ վագրը նկատեց վազող պախրային: Նապաստակին մոռացած՝ ընկավ պախրայի՛ հետևից: Վազում էր վագրը ու մտածում. «Պախրան նապաստակից խոշոր է, և իմ ճաշը ավելի շատ կլինի»:

Այդ միջոցին վագրը տեսավ եղջերուին: Նա շուռ եկավ ու վազեց եղջերուի հետևից: Վազում էր և շրթունքները լիզում. «Ինչո՞ւ վազեմ պախրայի հետևից, երբ կարող եմ այսպիսի յուղալի ճաշ ունենալ»:



է դրանից ջուր բամել: Ես կարող եմ ավելի դժվարին բան անել, ես այս քարից կրակ կհանեմ:

Ժանոն վերցրեց դարբնի մեծ մուրճը և այնպես հարվածեց քարին, որ նրանից կայծեր թափվեցին:

Կախարդ Էնրիկն ուրախացավ:

— Ե՛վ լավ հարվածեցիր, և՛ լավ պատասխանեցիր ինձ,— ասաց նա,— առանց խելքի, միայն ուժով, փետուրն անգամ տեղից չես շարժի, իսկ խելքն ու ուժը միասին սարեր շուռ կտան: Համաձայն եմ, քեզ կվերցնեմ ինձ մոտ աշակերտ: Բայց ես ցանկանում եմ քեզանից խոսք լսել:

— Ի՞նչ խոսք,— զարմացավ Ժանոն:

— Նվիրական խոսք, դարբնի նվիրական խոսք: Ամեն մի արհեստ ունի իր խոսքը: Եթե չգիտես այն, սովորելն ավելորդ է, միևնույն է, երբեք հրմուտ վարպետ չես դառնա:

Ժանոն մի քիչ մտածեց, հետո ժպտալով ասաց.

— Կռի՛ր երկաթը՝ քանի տաք է: Արհեստը սովորիր փոքր հասակից: Եթե ժամանակը կորցրիր, ուրիշին մի՛ հանդիմանիր:

Այստեղ դարբին կախարդը սկսեց հռհռալ, և նրա մեջ մի կաթիլ զայրույթ անգամ չմնաց:

— Կեցցե՛ս,— ասաց նա Ժանոյին,— գործունյա տղա ես: Դու կդառնաս կախարդ դարբին:

Բոլոր մարդիկ միատեսակ հաջողակ չեն ուսման մեջ: Բայց կարելի էր կարծել, թե Ժանոն ծնվել էր դարբին դառնալու համար: Ա՛յն, ինչ մի ուրիշը մեկ տարում կսովորեր, Ժանոն մի ամսում էր սովորում: Էնրիկի ուրախությանը չափ չկար: Եվ այդ հասկանալի է, լավ աշակերտը ուսուցչի պատիվն է:

Այդպես էլ ապրում էին նրանք երկուսով հանգիստ ու խաղաղ:

Բայց ահա մի անգամ այդ կողմերը եկավ մի կոմս: Նա Փարիզից էր եկել: Կոմսը պալատում եղել էր պարոն դ'Արտանյանի ջոկատում: Միայն պարոն դ'Արտանյանն էր կարողացել հասկանալ, որ այդ կոմսը նրանցից չէ, որոնք հարազատ Գասկոնին փառք կբերեն, և առաջարկեց կոմսին վերադառնալ այնտեղ, որտեղից եկել էր: Իսկ կոմսն ուրախ էր, որ այդպես վերջացավ: Վերադարձավ նա իր կալվածքները և սկսեց մարդկանց աչքերին թոզ փչել, որ իբր թե նա իր պալատը պետք է նկարազարդի, զարմանալի պարահանդեսներ կազմակերպի:

Կոմսը կանչեց Էնրիկ-կախարդին, նախ մեծ քանակությամբ հողմացույցներ պատվիրեց: Նա հողմացույցներ շատ էր սիրում, գուցե նրանից էր, որ նայելով հողմացույցներին, նա մտաբերում էր փարիզյան պալատականներին, որոնք միշտ քթները քամու դիմաց էին պահում: Իսկ հետո կոմսը հրամայեց դարբնին՝ ամրոցի դարպասի համար թուջե վանդակ պատրաստել. Էնրիկն ու Ժանոն միասին այնպիսի մի վանդակ պատրաստեցին, որ իսկական հրաշք էր: Վանդակը կախեցին ամրոցի դարպասի վրա: Կոմսը սկսեց գովել դարբիններին, գովեց, բայց ոչ մի կոպեկ չվճարեց: Մի կողմից Էնրիկն, իհարկե, ուրախ էր, որ նրա աշխատանքն այդքան դուր է գալիս կոմսին, բայց գովեստներով փոր չես կշտացնի, և նա գնաց կոմսի մոտ վարձը խնդրելու: Խեղճ մարդ, կոմսը նրան տեսնել անգամ չուզեց, հրամայեց ծառաներին դուրս վռնդել դարբնին:

Էնրիկը շատ զայրացավ: Ետ հրեց ծառաներին, վանդակը հանեց դարպասի վրայից, շալակն առավ



Եղջերուն վազեց մինչև հորդառատ գետը և թեթև թռիչքով ցատկեց մյուս ափը: Իսկ վագրը չէր կարող ցատկել լայն և խոր գետի վրայից ու զայրույթով նայեց ջրին:

Եվ հանկարծ նա ջրի մեջ տեսավ իր արտացոլումը: Գլխի չընկնելով, որ դա հենց ինքն է, որ կա, վագրը մտածեց. «Ահա մի վիթխարի գազան: Չարժե հետապնդել եղջերուին, երբ իմ թաթի տակ մի այսպիսի խոշոր որս կա»:





ու տարավ: Ոչ ոք դարբնին ընդդիմանալ չփորձեց: Կոմսը հենց լսեց՝ բարկությունից կատաղեց:

— Կույլ՛տ, բուի արարած, այդ ի՞նչ վերաբերմունք է: Ես ցույց կտամ նրան, թե ինչ է նշանակում վիրավորանք հասցնել կոմսին:

Եվ նա մատնեց Էնրիկեին: Դիմեց արքայական դատարանին, թե այդ դարբինը կախարդ է: Եվ բացի այդ, կոմսն ասաց, որ այդ անպիտանը իր կալվածքից գողացել է Թուջե վանդակը: Իսկ վանդակը գին չունի:

Եվ ահա Էնրիկեին բանտ տարան: Իսկ դատարանի վճիռն այսպիսին էր. «Գողություն անելու համար կտրել աջ ձեռքը, իսկ հետո, որպես կախարդի՝ այրել խարույկի վրա»:

Մահապատժի օրը այնքան ժողովուրդ էր հավաքվել հրապարակում, որ ասեղ գցելու տեղ չկար: Ժանոն նույնպես այնտեղ էր, նա շրջում էր ամբոխի մեջ: Բերեցին Էնրիկեին: Սև, բրդոտ աչքերը կրակի նման վառվում էին, ոնց որ իսկական կախարդ լիներ: Նրա ոտքերն ու ձեռքերը շղթայակապ էին:

Հանցագործին բերել էին, բայց դահիճը չկար: Փնտրում էին, բայց ոչ մի տեղ գտնել չէին կարողանում: Արդեն ամբոխի մեջ շշուկներ էին լսվում, թե սատանան է տարել դահճին, որպեսզի օգնի իր աշակերտին: Այդ ժամանակ դատավորը բարձրացավ կառափնարան և ասաց.

— Քանի որ դահճին գտնել չկարողացանք, մենք մի մարդ ենք գտել, որը ինքնակամ կերպով համաձայնել է վճիռն ի կատար ածել:

Եվ կառափնարան է բարձրանում ամբողջովին կարմիր հագած, ահագին կացինը ձեռքին... Ի՞նչ եք կարծում, ո՞վ... Դաստու Միաչքանին, Էնրիկեի հին բարեկամը: Ամբոխն աղմկեց.

— Ինչպե՞ս չի ամաչում...

Միայն Ժանոն ոչինչ չասաց: Էնրիկը նույնպես լուռ էր: Կարելի էր ենթադրել, թե նա չճանաչեց իր հին բարեկամին: Դաստուն կացինը վեր բարձրացրեց, Էնրիկեի ձեռքը կտրելու համար, և հանկարծ դարբինը բղավեց.

**Վագրը ցատկեց ջրի մեջ, որսի հետևից: Բայց որսը չկար: Վագրը խեղդվում էր հորդ և խորը գետում: Իսկ ափից նապաստակը, պախրան ու եղջերուն նայում և ասում էին.**

**— Այդպես էլ պետք է այդ ագահ և դաժան գազանին:**

## ԱՐԱԳԻԼՆ ՈՒ ԱԳՌԱՎԸ

**Մի անգամ արագիլն ու ագռավը վիճեցին, թե իրենցից ով առաջինը ծաղիկը կհասցնի փոթորկալից գետի մյուս ափը: Վերցրեցին կտուցներին մեկական ծաղիկ ու թռան:**



**Թռչում էր արագիլը և մտածում. «Ես ագռավից անհամեմատ թույլ եմ, ուրեմն հարկավոր է ջանալ»:**

— Կացի՛ն, ո՞վ է քեզ կոել։

Եվ բոլորն էլ լսեցին, թե ինչպես մի բարակ ձայն, չգիտես որտեղից, պատասխանեց.

— Դու՛, դարբին։

— Էլ ինչպե՞ս ես համարձակվում կտրել այն ձեռքը, որը քե՛զ է կռել,— բացականչեց Էնրիկը։

— Մի՛ վախենա, դարբին,— պատասխանեց կացինն ու օդում կախված մնաց։ Բոլորն էլ տեսան, որ Գաստոն ամբողջ ուժով ձգում է, բայց չի կարողանում կացինն իջեցնել։

Իսկ դարբինը նորից բացականչեց.

— Իսկ դուք, շղթանե՛ր, ձեզ ո՞վ է սարքել։

— Դո՛ւ, դարբին,— ծվծվաց մի բարակ ձայն։

— Եթե այդպես է, էլ ինչի՞ եք սպասում, ինչո՞ւ ինձ բաց չեք թողնում։

— Գնա՛, դարբին։

Բացվեցին կապանքները, շղթաներն ընկան։

Եվ նորից բացականչեց Էնրիկը.

— Մի՞թե այստեղ, ամբոխի մեջ, իմ ձեռքով սարքած մի սուսեր չկա, ինչո՞ւ նա ինձ օգնության չի գալիս։

— Ես այստեղ եմ, դարբին,— պատասխանեց բարակ ձայնը,— ամբոխի միջից թռավ մի սուսեր ու ընկավ դարբնի ոտքերի առաջ։

Էնրիկը վերցրեց սուսերը և թռավ կառափնարանից։

Ամբոխը նրան ճամփա տվեց։ Էնրիկը փախավ։

Բոլորը փախցան, փախցավ նաև դատավորը։ Միայն Ժանն էր, որ աչքն անգամ չթարթեց, և այդ դահիճը, կարծես հրաշք լիներ, այնպես հանգիստ էր կանգնած, ասես ոչինչ չէր պատահել։ Ամբոխն այնպես խառնվեց իրար, որ ոչ որ ոչինչ նկատել չէր կարող։ Գաստոն հանգիստ ու խաղաղ իջավ կառափնարանից, աչքով արեց Ժաննային և կորավ ամբոխի մեջ։ Ժաննն նույնպես աներևութացավ։ Նրանք երեքով էլ աներևութացան, և ոչ ոք նրանց այլևս ոչ մի տեղ չտեսավ։

Ահա և ամբողջ պատմությունը։ Մարդիկ հետո տարբեր բաներ էին պատմում։ Եղան նույնիսկ այնպիսիները, որոնք իրենց աչքերով էին տեսել, թե ինչպես սատանան Էնրիկ կախարդին, Գաստու Միաչքանուն և Ժանն պատանուն տարավ լեռների հետևը։ Հետո գտան խսկական դահճին, գտան նրան բանտային խցիկում, սատիկ հարբած վիճակում։ Երևի այդ էլ սատանայի գործն էր։

Թուջե վանդակը տվեցին եկեղեցուն, այն եկեղեցուն, որ գտնվում է Բուլոնում։ Վանդակը հիմա էլ դեռ այնտեղ է, կարող եք գնալ ու տեսնել։ Կարծեք, թե թուջից չի սարքված այն, այլ՝ ամենաուրբ ժանյակից։

Իսկ Էնրիկի, Գաստուի և Ժաննայի մասին ոչինչ այլևս չլսվեց, համենայն դեպս, մեր կողմերում չէին խոսում այդ մասին։

Բայց ահա, միաժամանակ անց՝ Փարիզում մի դարբնոց բացվեց, որտեղ աշխատում էին երեք դարբին. մեկը հաղթանդամ էր, սև, մազոտ, ասես իսկական կախարդ լիներ, մյուսը մի աչքից կույր էր, իսկ երրորդը դեռ բոլորովին պատանի էր. ճարպիկ, արագաշարժ, ինչպես մողես։

Նրանց հարևանները երբեմն լսում էին, թե պատանին ինչպես էր ծաղրում Միաչքանուն։

— Ինչ ուզում ես ասա, Էնրիկը բոլորից լավ վարպետ է։ Տեսա՞ր, ինչպես էին բոլոր իրերը լսում նրան, այդ նրանից է, որ նա կախարդ է։

Իսկ ագռավը ասում էր ինքն իրեն. «Ես արագիլից բավական ուժեղ եմ. հաղթանակը իմն է անպայման։ Ուրեմն և չարժե շտապել»։

Հասնելով համարյա ափին, ագռավը շրջվեց և տեսավ, որ արագիլը դեռ գետի մեջտեղին է հասել։ Ինքնագոհ ագռավը հռհռաց.

— Կռու՜... հաղթանակը իմն է։ —Այդ պահին նրա բացված կտուցից ծաղիկն ընկավ ջրի մեջ։

Փոթորկալից գետը վերցրեց ծաղիկը և տարավ հեռո՜ւ-հեռո՜ւ։ Ագռավն ուզեց հանել ծաղիկը ջրից, բայց վախեցավ, որ խեղդվի և թռավ ծաղկի հետևից, գետի հոսանքով։

Այդ ժամանակ արագիլն աշխատում էր ավելի արագ թռչել։ Թռա՜վ-թռա՜վ և հասավ գետի մյուս ափը։ Այսպես, նա հաղթեց ինքնագոհ ագռավին։

Թարգմ. Հ. ԹՅՈՒՓԵԼՅԱՆ





Նկ. Ալ. Գրիգորյանի

*Իսկ Դաստոն փնթփնթում էր.*

*— Լսո՞ւմ, լսո՞ւմ։ Իսկ եթե չլինե՞ր իմ մի տակառ ամենալավ գինին։ Ա՛յ թե խմում էր դահիճը, հեշտ չէր նրան հարբեցնելն այն աստիճան, որ մեռելի նման ընկներ, վեր չկենար և ես էլ կարողանայի գրպանեցնել նրա տեղը։ Իհարկե, իրերը լսում են իրենց վարպետին, առանձնապես այն ժամանակ, երբ նրանք գտնվում են ընկերոջ ձեռքում։*

*Այսպիսի դեպքերում միշտ մեջ էր ընկնում սև մարդը.*

*— Դուք երկուսով էլ ճիշտ եք ասում։ Ընկերները կարող են կռվել, բայց դժվա՛ր պահին ամեն ինչ մոռացվում է։ Մեր դարբնոցում մենք միայն երկաթ չենք կռում, այստեղ կոփվում է նաև բարեկամությունը, լավ, ամուր բարեկամությունը։ Ա՛յ, հենց սա է դարբինների այն խոսքը, որ կոչվում է նվիրական խոսք։*

***Ռուսերենից թարգմ. Վ. ԱՌԱՄՅԱՆ***

***Վ. Ա. ՕԲՐՈՒՉԵՎ***
***(Ծննդյան 100-ամյակի առթիվ)***

# Գերանները

(Հատված «Պլուտոնիա» գրքից)

Այդպես անցավ օրվա կեսը, և թիավարներն արդեն սկսեցին ափը զննել, որոնելով մի տեղ, որ վառելիք ունենար ճաշի, հանգստի համար։ Առավոտյան նրանք էլի շատ ձուկ էին որսացել և այժմ պատրաստվում էին խորովել այն։

— Ահա դիմացը, ափի վրա գերանների ինչ-որ կույտ է երևում,— բացականչեց վերջապես Մակշեևը։

Մակույկներն այնպես ուղղեցին, որ աստիճանաբար ափին մոտենան, և ուժ տվին թիերին՝ համեղ նախաճաշի հույսով լի։

Բայց երբ գերանները դեռևս մի հարյուր մետր հեռու էին, Կաշտանովը, սևեռուն հայացքով զննելով, հայտարարեց.

— Դա բոլորովին էլ գերանների կույտ չէ, այլ ինչ-որ հսկայական մեծության մեռած կամ քնած կենդանիներ են։

— Ավելի զգո՛ւյշ, ափից հեռո՛ւ գնացեք,— բղավեց Մակշեևը, նկատելով, որ կույտը շարժվեց։

Մակույկները կանգ առան երկու հարյուր քայլ հեռու, և թիավարներն սկսեցին զարմանքով ու սարսափով դիտել ափը, որի ավազուտի վրա իրար կողքի փռված՝ ընկել էին արտասովոր չորս հրեշներ։ Նրանց իրանները ավազե ափի վրա բարձրանում էին որպես երկար բլրակներ՝ չորս մետր բարձրությամբ։ Մեջքների երկայնքով ձգվում էր նեղ ու հարթ մի սանր, բայց առանց վահանի և փշերի, ինչպես ստեգոզավրների մոտ է լինում, այլ միանգամայն ողորկ և, ըստ երևույթին, լերկ։ Կենդանիների կողերը ավազա-դեղնավուն գույնի էին, երկար ու նեղ, մթագույն ընդլայնակի շերտերով, այնպես որ հեռվից իրար վրա դարսված գերանների կույտի տպավորություն էին թողնում։

Նույնիսկ այդքան մոտիկ տարածության վրա դժվար էր հավատալ, որ դրանք ոչ թե գերանների չորս շեղջեր են, այլ ոչ պակաս տասնհինգ-տասնյոթ մետր երկարության հրեշավոր կենդանիներ։ Բայց այդ շեղջերը շունչ քաշելիս բարձրացնում էին կողերը, երբեմն ցնցվում էին, իսկ պոչերը շարժվում էին ջրում, նրա հայելապատ երեսի վրա առաջացնելով ալեծփություն։

— Ինչպե՞ս անենք, որ վեր կենան,— ասաց Պապոչկինը:— Չէ՞ որ պետք է մի լավ տեսնել դրանց և լուսանկարել:

— Դժվար չէ մի քանի պայթուցիկ գնդակ հղել այդ մսեղիքին,— ասաց Մակշեևը,— բայց արդյոք վատ չի՞ լինի մեզ համար: Եթե հրեշները կատաղեն և վրա տան, նրանք մեզ մի ակնթարթում կուլ կտան:

— Իսկ դրանք գիշակերնե՞ր են, թե՞ խոտակերներ,— հետաքրքրվեց Գրոմեկոն,— որ դրանք վիթխարի թեփամորթներ են, այդ ես չեմ կասկածում:

— Ենթադրում եմ, որ դրանք գիշակերներ չեն,— ասաց Կաշտանովը:— Գիշակերները երբեք այդպիսի հսկայական չափերի չեն հասել: Եթե գիշակերներ լինեին՝ դրանց համար չափազանց շատ կենդանական կեր հարկավոր կլիներ, իսկ բնությունն այդ խնդրում որոշ խնայողություն է պահպանում: Հիշեցեք, որ ժամանակակից բոլոր առավել խոշոր կենդանիները, ինչպես փղերը, ռնգեղջյուրները, գետաձիերը, կետերը, գիշակերներ չեն:

— Այդ դեպքում ուրեմն կարելի է որսալ: Մի լավ նայեցեք, ինչքա՜ն միս է, մի ամբողջ գումարտակ կարելի է կերակրել,— հայտարարեց բուսաբանը, ձեռքը հրացանին տանելով:

— Սպասեցեք մի քիչ,— նախազգուշացրեց նրան Կաշտանովը:— Թեև գիշակերներ չեն, բայց հազիվ թե խոհեմություն լինի նրանց կատաղեցնելը: Նրանք կարող են մեզ վրա պրծնել և կճեպի նման ջրասույզ անել մեր մակույկները:

Գրոմեկոն չէր հանգստանում:

— Իսկ եթե կրակենք օդի մեջ,— ասաց նա,— կամ կրակենք կոտորակով, որպեսզի ցնցվեն, ինչու չի լինի, կոտորակը՝ այդ հսկաներին միայն խուտուտ կտա:

— Լա՛վ, միայն նախ լողանք այնպես, որ նրանք մեր դիմացը գան, բայց ափից գոնե մի հարյուր մետր հեռու լինենք: Եթե նրանք ցամաքային կենդանիներ են, ապա ջրի մեջ այդքան հեռու չեն գնա:

Երբ մակույկները դուրս եկան հրեշների դիմաց, որոնք շարունակում էին հանգիստ պառկած մնալ՝ Գրոմեկոն նրանց վրա արձակեց կոտորակով երկու լիցք: Կոտորակները կամ մոտիկ կրակոցի ձայնը, որ արձագանքեցին անտառի պատերը, ստիպեցին կենդանիներին ոտքի կանգնել:

Հրեշները ինչ-որ տարօրինակ ձևով շարժեցին իրենց երկար վզերը, որոնք վերջանում էին նրանց մարմնի համեմատությամբ ծիծաղելիորեն փոքր գլխով, չնայած դրան առնվազն յոթանասունհինգ սանտիմետր կլինեին, իսկ այնուհետև ծանր վարգով և անճոռնի օրորվելով սկսեցին վազել ափի երկայնքով: Նրանց ոտները, գանգվածային մարմնի համեմատությամբ, կարճ էին և թույլ:

— Ես կարծում եմ, որ դրանք բրոնտոզավրներ են, ամենախոշոր խոտակեր թեփամորթները, որոնք արագ կերպով անհայտացել են երկրի երեսից՝ իրենց անճոռնի օրգանիզմի և պաշտպանական օրգանների բացակայության հետևանքով,— ասաց Կաշտանովը:

— Իսկ ո՞վ կարող էր այդ հսկաների վրա հարձակվել: Չէ՞ որ նրանց երկարությունը քսանհինգ-քսանյոթ մետրից պակաս չէ, իսկ բարձրությունը՝ չորս մետրից ավելի,— հետաքրքրվեց Մակշեևը:

— Եվ չնայած այդ չափերին, մի գիշակերի, օրինակ՝ ցերատոզավրի համար ոչինչ բան է կրծել այդպիսի հրեշի վիզը, էլ չենք խոսում արդեն նրա ձագերին և ձվերը ոչնչացնելու մասին:



— Ըստ երևույթին դրանք Պլուտոնիայում ևս շատ չեն,—նկատեց Պապոչկինը:

— Մենք արդեն շատ իգուանոդոններ, պտերոդակտիլներ, իխտիո և պլեզիոզավրներ տեսանք, իսկ սրանց առաջին անգամ ենք հանդիպում: Եվ քանի որ հրեշը վախկոտ է երևում, ուստի առաջարկում եմ ավելի մոտենալ ափին, որպեսզի լուսանկարը ավելի մեծադիր լինի:

Թեփամորթները փախան դեպի արևմուտք, այսինքն՝ այն կողմը, դեպի ուր մեր ճանապարհորդներն էին նավարկում, և մոտ կես կիլոմետր տարածություն վազելուց հետո կանգ առան: Այդ պատճառով կարճ ժամանակից հետո մակույկները, որոնք ափին էին մոտենում, նորից հանդիպեցին նրանց: Պապոչկինը երկու նկարահանում կատարեց, և երբ երրորդին էր պատրաստվում, խնդրեց բուսաբանին, որ կրակի, որպեսզի կենդանիներին լուսանկարի անճոռնի վազքի ընթացքում:

Կոտորուքով լիցքը, որ թեփամորթների վրա բաց էր թողնվել մոտիկ տարածությունից, այս անգամ այլ արդյունք տվեց: Հրեշները, փոխանակ սկսելու իրենց վազքը ափի երկայնքով, սկսեցին իրար հրմշտելով ջուրը նետվել, առաջացնելով հսկայական ալիքներ և ջրցայտքի մի ամբողջ շատրվան, ցայտքեր, որոնք հասնում էին անզգույշ ծովագնացներին: Գրոմեկոն, որ կանգնած էր մակույկում, գլխից մինչև ոտները սառանվելով, կորցրեց հավասարակշռությունը և հրացանը ձեռքին շմփաց ծովը: Պապոչկինը կարողացավ ապարատը թաքցնել բաճկոնի տակ, գլուխն անձնվիրաբար դեմ տալով սառը ջրցանին: Կաշտանովն ու Մակշեևը, որոնք հետնամասումն էին նստել և բարեբախտաբար թիերը ձեռքից բաց չէին թողել, ծայրահեղ ճիգ գործադրեցին, որպեսզի պահեն մակույկը իրար ետևից վրա տվող ալիքների դեմ և չողողվեն ու չխեղդվեն:

Եթե այդ հսկաները շարժվեին ուղղակի դեպի մակույկները, ճանապարհորդների կործանումն անխուսափելի կլիներ հրեշների մարմնի ճնշման տակ՝ նրանք կճզմվեին և կխեղդվեին իրենց գույքով հանդերձ, որովհետև խորությունը, որի վրա իրենք էին, երկու մետրից ավելի չէր: Բայց թեփամորթները փախան շեղակի, առանց չնկատեցին հետապնդողներին և կանգ առան, երբ ջուրը ծածկեց նրանց իրանը և վզի զգալի մասը: Ալեկոծված ծովի մակերեսին երևում էին միայն չորս այլանդակ գլուխներ, որոնք շուռ էին գալիս տարբեր կողմերով, կարծես աշխատում էին զննել տարօրինակ թշնամիներին կամ պարզել իրարանցման պատճառը:

Մինչ այդ Գրոմեկոն արդեն ջրի տակից դուրս էր եկել և լողում էր դեպի մակույկները, որոնք ալիքներից քշված մի քիչ հեռացել էին աղետի վայրից: Անկման ժամանակ նա ձեռքից բաց չէր թողել հրացանը և այժմ պահում էր գլխավերևում իսկ մի ձեռքով էլ մակույկի շուրթն էր բռնել, մինչև ընկերները օգնության հասան և նրան ջրից հանեցին:

Նա, իհարկե, թրջվել էր ամբողջապես, թրջել էր իր բազմաթիվ գրպանների բովանդակությունը՝ գրառումների գրքույկը, ժամացույցը, բժշկական պիտույքները, ծխախոտի քսակը, կորցրել ծխամորճը և հայհոյանք էր թափում արկածի մեղավորի հասցեին:

— Պետք է ափին մոտենալ,—հայտարարեց նա վերջապես, բաց թողնելով իր վայրույթի ողջ լիցքը:—Թեև Պլուտոնը լավ է տաքացնում, բայց եթե գործիքները իսկույն չսրբվեն և գրառումների գիրքը խարույկի մոտ չչորացվի, գործիքները կժանգոտեն, իսկ իմ բոլոր գրառումները կկորչեն:

Նկ. ԼԵՎՈՆ ՄԱՆԱՍԵՐՅԱՆԻ



— Իսկ բրոնտոզավրնե՞րը,— վախեցած ասաց Պապոչկինը:—Մենք կանգավորվենք ափին, նրանք էլ ջրից դուրս կգան և կցանկանան մեզ հետ ավելի մոտիկից ծանոթանալ:

— Ի՞նչ կա որ, այն ժամանակ դուք նրանց կլուսանկարեք ավելի մոտիկ տարածության վրա:

— Ծա՜տ շնորհակալ եմ: Եթե նրանք ցանկանան զվարճանալ մեր հանգստի վայրում, ապա մենք ստիպված անտառ ենք փախչելու և բարձրանալու ենք ծառերի վրա:

— Կարծում եմ,— նկատեց Կաշտանովը,— որ այդ հրեշները շատ վախկոտ են և խելքով աչքի չեն ընկնում: Նրանք մեզ համար վտանգավոր չեն, եթե մենք այնքան անզգույշ չլինենք, ինչպես քիչ առաջ եղանք: Ափ դուրս գա՛նք, զբաղվենք մեր նախաճաշով և դիտենք նրանց:

Դուրս եկան ափ, անտառի եզրից վառելափայտ հավաքեցին և զբաղվեցին նախաճաշի պատրաստությամբ, անվստահ նայելով բրոնտոզավրների կողմը: Վերջինները դեռևս շարունակում էին կանգնած մնալ ջրում, միևնույն տեղում, չհամարձակվելով ցամաք դուրս գալ:

— Այդ կենդանիները ակներևաբար լողալ չգիտեն,—նկատեց Պապոչկինը:—Նրանք ցամաքային թշնամիներից փրկվելու համար են ջուր մտել և,

մինչև մենք չհեռանանք, նրանք ափ դուրս չեն գա։

Մինչ ձուկը տապակվում էր, Գրոմեկոն ավազի վրա փռեց իր զգեստն ու սպիտակեղենը, Պլուտոնի ճառագայթների տակ չորացնելու համար, իսկ ինքը Ադամի զգեստով սկսեց մաքրել գործիքներն ու չորացնել գրառումների գրքույկը։ Նախաճաշելուց հետո պառկեցին ավազի վրա, հայացքը հառելով թեփամորթներին, որոնք տեղից չէին շարժվում, իսկ այնուհետև բոլորը միասին նավարկեցին ափի երկայնքի ուղղությամբ։ Մի քանի կիլոմետր անց, հարավային ափն սկսեց նկատելի կերպով թեքվել, սակայն դիմացն ընկած և անտառով ծածկված երկար հրվանդանը պատնեշում էր այդ կողմի տեսարանը։ Երբ այն շրջանցեցին, պարզվեց, որ այն հույսը, թե ծովը տարածվում է հեռուն՝ դեպի հարավ և հնարավորություն կտա մակույկներով լողալ ավելի հեռու՝ Պլուտոնիայի խորքը, այդ հույսը չարդարացավ։ Ծովի մի մեծ ծոց էր առաջանում միայն, և մի քանի կիլոմետրի վրա տեսանելի էր նրա ափը։

Որովհետև հարավի կողմից կարող էր ծովախորշը թափվել զգալի մեծության մի գետ, ուստի որոշեցին նավարկել այդ ուղղությամբ։ Մի ժամ հետո հասան հարավային ափին և համոզվեցին, որ իրոք այնտեղ գետ կա, բայց ոչ մեծ։ Մեկ մակույկով կարելի էր փորձի համար մի էքսկուրսիա կատարել երկրի խորքը, որ այդ տեղում ծովափի անտառե պատով էր ծածկված։ Այդ պատճառով գետաբերանի մոտ ուզեցին կանգ առնել։ Մտածեցին շրջագայություն կատարել միայն երկուսով, մյուս երկուսին թողնել վրանի մոտ, որովհետև ծովի եզերքին պատահած տխուր փորձը ցույց էր տվել, թե որքան վտանգավոր է գույքը թողնել միայն Գեներալի հսկողությանը։ Հարավային ափի այս մասում էլ կարող էին մրջյուններ լինել, ինչքան էլ ափը հեռու լիներ ոչնչացված մրջնանոցից։

# Յուրօրինակ քննություն

Երեխաները արդեն գնացել էին արձակուրդ, բայց դպրոցի շենքը նորից աշխույժ եռուզեռի մեջ էր։

Երկրորդ հարկի մեծ դասասենյակներից մեկում ցուցադրված էին հինգ, վեց, յոթ և ութերորդ դասարանցիների աշխատանքները։ Դա կարծես մի յուրօրինակ քննություն էր տնարարության առարկայից։ Երեխաները պատրաստել էին բնակարանի մակետ և բոլոր սենյակները խնամքով ու ճաշակով կահավորել։ Նրանք չէին մոռացել նաև բնակարանի գեղարվեստական ձևավորման մասին, և որպեսզի դուք կարողանաք պատկերացնել գեղարվեստական կտավների չափը, ապա բավական է ասել, որ դրանց շրջանակները պատրաստել էին լուցկու հատիկներով։

Ցուցասրահի պատերին կախված էին աշակերտների կատարած գեղանկարները, խճանկարները, ձեռագործները։ Անկյուններում, փոքրիկ սեղանների վրա դրված էին սփռոցները, սրբիչները ու շրջազգեստները, որոնք ոչնչով չէին զիջում հմուտ վարպետների կատարած գործերին։



Բանն այն է, որ այս անգամ երեխաները լուցկու հատիկներով բավական հետաքրքիր աշխատանքներ էին կատարել։ Ամեն









տեղ մենք լսում ենք. «Երեխաներին լուցկիներ տալ չի կարելի» և կամ «Լուցկիները թաքցրեք երեխաներից», բայց այստեղ աշակերտները լուցկիներով ընտեղծել էին հետաքրքիր կտավներ և ոչ թե հրդեհ գցել։ Սև ֆոնի վրա լուցկու հատիկներով նրանք պատրաստել էին Մեսրոպ Մաշտոցի և Սայաթ-Նովայի դիմանկարները, իսկ դրանց միջև տեղադրել նույն ձևով պատկերված Կոմիտասի «Հորովելը»։

Խիստ բազմաժանր էին ցուցահանդեսի աշխատանքները։ Արևափորագրությամբ երեխաները նախշազարդել էին կահույքը՝ սեղանները, մահճակալը, աթոռները, լուսամփոփները։ Օգտվելով հայկական մանրանկարներից, նրանք դարձյալ արևափորագրությամբ պատկերել էին դրվագներ Ավարայրի ճակատամարտից, որ ամբողջականացրել էին իրենց սեփական մտահղացմամբ և կոմպոզիցիայով։

Առավել հետաքրքիր էին 4-րդ դասարանցիների պատրաստած խճանկարները, որոնք պատկերում էին շուրջպար, կժերով ջրի գնացող աղջիկներ և այլն։ Այստեղ ուշագրավն այն է, որ երեխաները խճի փոխարեն օգտագործել էին ներկած բրինձ և կարծես թե բոլորովին էլ վատ չէր ստացվել։

Չէ, թվում էր, թե երեխաները չեն գնացել արձակուրդ, նրանք այստեղ էին իրենց մանկական ու պատանեկական աշխարհընկալումով, վառ երևակայությամբ և ձգտումներով։

Երևանի № 78 դպրոցը, տնտեսության դասատու Սաթենիկ Թոփուզյանի ղեկավարությամբ, ամեն տարեվերջին ցուցադրում է ուսումնական տարվա ընթացքում աշակերտների կատարած լավագույն աշխատանքները, որոնք մեծ հետաքրքրություն և հաճույք են պատճառում։

*ԱԻԴԱ ՎԱՐԴԱՆՅԱՆ*



*Լուսանկարները՝ ՀԵՐԲԵՐՏ ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԻ*



Բաժինը վարում է
պրոֆ. ԳԻՏՈՒՆՅԱՆԸ

## ԳԻՇԵՐԱՅԻՆ ՄԵՂԵԴԻՆ

Անտառը սուզվեց գիշերային խավարի մեջ: Հոգնած որսորդները պատրաստվում էին քուն մտնել խարույկի մոտ: Գիշերային անդորրը խանգարեց մի սրտաշարժ մեղեդի. որն սկսվեց ցածր. հազիվ լսելի. հետո կամաց-կամաց բարձրանալով տարածվեց շրջակայքում: Մեղեդին մերթ զրնգում էր աշխույժ՝ ուժ ու թափ ներշնչելով. մերթ մանրատվում մանր մասերի ու ցրվում. մարում հեռո՜ւ. հեռու մի տեղ. ապա նորից հավաքվում. դանդաղ ուժ առնում. նորից հնչում մերթ նուրբ. կենսուրախ գեղգեղանքով. մերթ աղիողորմ ու սրտաճմլիկ: Ո՞վ էր այդ երգիչը. որ առանց բառ արտասանելու այդքան շատ բան էր ասում. այդպես հուզում էր. ցնցում. թմրեցնում կամ ոգեշնչում:

Այդ մեղեդին այնպես հուզեց որսորդներին. որ քունը փախավ նրանց աչքերից:

— Ո՞վ ես, ա՛յ երգիչ. որ սոխակը նսեմանում է քո առաջ.— հիացմունքով ասաց նրանցից մեկը:

— Դա կարմրակուրծք սարեկիկն է. թռչունների թագավորության մեջ ամենալավ երգիչը.— պատասխանեց մյուսը. որ ավելի տարիքով էր:— Ես տեսել եմ այդ կախարդ երգչին, հազիվ մի թզաչափ կլինի. ամուր կտուց ունի. կարճ թևեր, երկար պոչ. մեջքը սև է. տեղ-տեղ խալերով: փորի կողմը ճերմակ է, իսկ պարանոցը մինչև կրծքի կեսը՝ կարմիր: Թևերի և հովհարի փետուրների սպիտակ եզրերը ավելի գեղեցիկ տեսք են տալիս նրան

Կարմրակուրծք սարեկիկը. որը հռչակված է կարդինալ անունով. տարածված է Հարավային Ամերիկայի անտառներում:

ՖԼՈՐԱ ԱՂԱՍԱՐՅԱՆ

## ՊԱՊԸ 3 ՏԱՐԵԿԱՆ, ԹՈՌԸ՝ 57

Հարավային Բիրմայի Մերգուի արշիպելագի բնակիչները տարեցտարի երիտասարդանում են: Այդ բանին նրանք հասնում են բոլորովին հասարակ թվաբանական հաշիվների միջոցով:



Այդ կղզիներում ծնված երեխան միանգամից համարվում է 60 տարեկան: Երբ նա դառնում է մեկ տարեկան, ապա այդ տարին ոչ թե ավելանում է նրա հասակի վրա, այլ հանվում է: Այսպես՝ մեկ տարեկան երեխան 59 տարեկան է: Այստեղ ամենահարգված և իմաստուն մարդիկ ունեն 5—10 տարեկա՛ն հասակ:

Իսկ ինչպե՞ս վարվել, երբ մարդը 60 տարեկանից ավելի է: Շատ հասարակ: Այն օրը, երբ Մերգուի բնակիչը տեղական հաշվումներով դառնում է զրո տարեկան, ավելացնում են նորից 10 տարի, և նա կարող է նորից սկսել իր երիտասարդությունը:

## ԳԻՏԵ՞Ք ՈՐ...

*ԱՎՍՏՐԱԼԻԱՅՈՒՄ և Նոր Գվինեայում կան հսկայական թիթեռներ, որոնց թևերի լայնքը հասնում է 26 սանտիմետրի: Այդ թիթեռները թեթևորեն ճախրում են նաև բարձր ծառերի կատարների վերևում: Որպեսզի թիթեռներին բռնեն, բնախույզները նրանց վրա հրացանով կրակում են մանր կապարագնդիկներ: Թիթեռները կարճ ու հաստ մարմին ունեն: Եվ բնակիչները նրանց օգտագործում են որպես սնունդ: Նրանք թիթեռներ են որսում նաև բարակ նետերով:*

*ԻՐ ՈՐՍԱԾ վագրերից առաջինը՝ չինացի որսորդ Խան Լոն սպանել է դեռ այս դարասկզբին: Այն ժամանակ նա 16 տարեկան էր: Անցած տարի 77 տարեկան որսորդի ձեռքով ընկել են էլի չորս բծավոր գիշատիչներ: Միայն այս անգամ տարեց Խան Լոն մենակ չէր որսի ժամանակ, նրան օգնում էին երիտասարդ որսորդներ և որսահալածներ:*

*Որսորդ Խան Լոի խփած վագրերի թիվը հասնում է 174-ի: Իսկ դա հազվագյուտ հավաքածու է անգամ փորձված որսորդի համար:*

Սիրելի խմբագրություն, մենք շատ ենք սիրում երաժշտությունը և ուզում ենք իմանալ, թե ով է ստեղծել նոտան և երբ:

# ԵՐԳՈՂ ՆՇԱՆՆԵՐ

ՌՈՒԶԱՆՆԱ ՍԱՐԳՍՅԱՆ, ՍՈՒՍԱՆՆԱ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ
(Լենինականի Նեկրասովի և Տոլստոյի անվան դպրոցների աշակերտուհիներ)

Եթե դուք հարցնում եք այն նշանների մասին, որոնցով այժմ գրի են առնվում երաժշտական հնչյունները ու մեղեդիները, ապա այդ հարցին պատասխանելը շատ հեշտ է:

Երաժշտական ձայնանիշերն ստեղծել է իտալացի երաժիշտ Գվիդո Արետինոն, որն ապրել է Արեցցո քաղաքում, սրանից 9 դար առաջ: Բայց Գվիդոն գրի էր առնում չորս տողի վրա, իսկ հետագայում, 14-րդ դարում, սկսեցին գրել հինգ տողով, օգտագործելով նաև լրացուցիչ գծիկներ՝ վերևում և ներքևում: Աստիճանաբար ստեղծվեցին բազմաթիվ նոր նշաններ, որոնք հնարավորություն են տալիս ճշտությամբ գրի առնել ամենաբարդ երաժշտական ստեղծագործությունը:

Բայց չէ՞ որ երաժշտությունը գոյություն է ունեցել անհիշելի ժամանակներից: Հին դարերում մարդիկ փորձել են ինչ-որ նշաններով գրի առնել անծանոթ երաժշտությունը, որպեսզի հետո հնարավոր լինեն երգել: Ամենահին գրանցումը, որ հայտնի է մեզ, պատկանում է Սումերի և Բաբելոնի հնագույն ժողովուրդներին, որոնք ապրել են երեք հազար տարի առաջ:

Հելլադայում մեղեդին նույնպես գրի են առել տառերի միջոցով, բայց այս ձևը վատ էր վերարտադրում երգը: Երգիչներն ու երաժիշտները պետք է սովորեին երաժշտական ստեղծագործությունները: Բայց որպեսզի կատարման ժամանակ չսխալվեին, երգչախմբի կամ նվագախմբի ղեկավարը շարժումներով աշխատում էր նրանց հիշեցնել մեղեդին: Կարծես թե նա երաժշտությունը նկարում էր օդում:

Հետո սկսեցին երաժշտությունը նկարել ոչ թե օդում, այլ թղթի վրա, հատուկ նշանների միջոցով: Եվ յուրաքանչյուր նշանը արտահայտում էր ոչ թե առանձին հնչյուն, ինչպես որ սումերների և հույների մոտ էր, այլ՝ եղանակի մի մասը:

Սակայն այդ մեթոդով կարելի էր վերհիշել միայն ծանոթ երաժշտությունը, իսկ նոր և անծանոթ մեղեդին հասկանալ ու կատարել հնարավոր չէր: Միայն Արետինո Գվիդոյի շնորհիվ հնարավոր եղավ երաժշտությունը ազատորեն գրել ու կարդալ, այնպես, ինչպես գրում և կարդում են բառերն ու նախադասությունները:

Հայերը շատ հին ժամանակներից ունեցել են իրենց սեփական երաժշտական ձայնանիշերը, որոնք կոչվել են խազեր: Սակայն 10-րդ դարի երկրորդ կեսից այդ խազերը մոռացության են մատնվել: Իսկ ինչքա՜ն երգեր կան գրի առնված մեր հին ձեռագրերում: Անհրաժեշտ էր գտնել երաժշտական խազերի գաղտնիքը, հասկանալ ու կարդալ երաժշտությունը, որպեսզի հնարավոր լիներ պարզել, թե հայ ժողովուրդը ինչպիսի երգեր է երգել հնագույն ժամանակներում: Այդ մեծ գործին ձեռնամուխ եղավ հանճարեղ Կոմիտասը: Հայ հին ձեռագրերից նա հավաքեց ավելի քան 70 խազ և երկար ու մանրազննին աշխատանքից հետո գտավ գաղտնիքը: Կոմիտասն պատրաստում էր մի խազագիրք, որով հույս ուներ լրիվ ունենալ հայկական ձայնանիշերի բանալին: Նա այնպես լավ էր հասկացել մեր խազերը, որ ժողովրդական երգերը գրի էր առնում դրանցով, դա ավելի արագ էր լինում: Մի անգամ, երբ Կոմիտասին հարցրին, թե ինչու է գրում հայկական ձայնանիշերով, նա պատասխանեց:

— Եվրոպական հինգ գծավոր թուղթ հանպատրաստից ես որտեղի՞ց գտնեմ, իսկ հայկական ձայնանիշերը ցանկացած թղթի վրա անմիջապես կգրեմ: Բացի այդ, հայկական ձայնանիշերը կարելի է երաժշտական սղագրություն համարել:

Սակայն Կոմիտասին չհաջողվեց ավարտի հասցնել այդ վիթխարի նշանակություն ունեցող գործը: Թուրք դահիճների յաթաղանը կտրեց նաև նրա գլուխը:



ԺԱՄԱՆՑ



## ԽԱՉԲԱՌ—ԳԱՂՏՆԱԳԻՐ



Բառերն սկսվում են «Ա» տառով:

1. 1466-1472 թթ. Հնդկաստանի ծովային ճանապարհը հայտնագործողի անունը:

2. Մեքսիկական անապատներում աճող չորասեր բույս: 3. Լեռնագագաթ Փամբակի լեռնաշղթայում: 4. Ծով, ուր թափվում են Սիր-Դարյա և Ամու-Դարյա գետերը: 5. Քաղաք Հունաստանում: 6. Տեսողությունը կանոնավորող առարկա: 7. Էլեկտրական լամպերի մեջ օգտագործվող գազ: 8. Մերձարևադարձային պտուղ: 9. Քաղաք Թուրքիայում:

Ուղղահայաց վանդակները ճիշտ լրացնելուց հետո, հորիզոնական վանդակներից մեկում դուք կկարդաք 18-րդ դարի խոշոր դեմքերից մեկի անունը:

Կազմեց՝ ԱԿՈՒԴԱՐ ԱՌԱՔԵԼՅԱՆ

(Ախուրյանի շրջան, գյուղ Կառնուտ, 8-րդ դաս. աշակերտ)

## ՌԵԲՈՒՍ



Ի՞նչ է գրված այս ռեբուսում և ո՞վ է այդ խոսքերի հեղինակը:

Կազմեց՝ ՀԱԶԴՐՈՒԲԱԼ ԱՐԱՄՈՒՆԻ

(Էջմիածին, Աբովյանի անվան միջն. դպրոցի աշակերտ)

## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԱՌԱԾՆԵՐ

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| | | Ղ | Ո | Վ | Գ | Ր |
| | | Ջ | Ե | Ս | Փ | Ո |
| | | Մ | Ե | Ն | Ա | Վ |
| | | | Ն | Ա | Ք | Ը |
| Ա | Ս | Ե | Ա | Լ | Ա | Վ |
| Չ | Ո | Ր | Ղ | Ռ | Թ | Յ |
| Ր | Ի | Ա | Լ | Ա | Վ | Ե |
| Ա | Տ | Թ | Ա | Թ | Յ | ՈՒ |
| Ա | Մ | Ե | Ն | ՈՒ | Թ | Յ |
| Չ | Ի | Ն | Ո | Ր | Ն | Ե |
| ՈՒ | Ն | Ի | Ց | | | |
| Կ | Ր | Կ | Ն | ՈՒ | | |
| Ն | Ը | Գ | Ի | Տ | | |
| Ա | Ն | Մ | Ա | Յ | | |

Այս պատկերը բաժանեք երկու հավասար և նման մասերի այնպես, որ դրանք միմյանց համակցելուց հետո ստացվի ուղղանկյուն քառանկյունի: Այդ ժամանակ հորիզոնական վանդակներում դուք կկարդաք երեք ժողովրդական առած:

Առաջարկ՝ ՎԱՉԵ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

Այս նկարին նայելով, հավանաբար, բոլոր երեխաներն էլ կկարողանան նույնությամբ արտանկարել: Իսկ դուք այդպես մի՛ արեք: Սեղանին դրեք թուղթ ու մատիտ, ապա մեկ րոպե ուշադիր նայեք նկարին, աշխատելով հիշել բոլոր մանրամասնությունները: Դրանից հետո փակեք ամսագիրը և փորձեք հիշողությամբ պատկերել այդ նկարը: Վերջացնելուց հետո նոր միայն բաց արեք ամսագիրը և համեմատեցեք նկարները: Սխալ չպետք է համարել, երբ որևէ առարկա նկարել եք ոչ բացարձակ ճշտությամբ: Կարևորն այն է, որ դուք հիշելով նկարեք բոլոր առարկաները նույն դասավորությամբ, ինչպես տրված է նկարում:

Նպատակահարմար է մրցում կազմակերպել օղակում, պարզելու թե ով է ավելի ուշադիր և ում տեսողական հիշողությունն է ավելի շատ զարգացած:

# ԿԱՐՈ՞Ղ ԵՍ ԳՈՒՇԱԿԵԼ

Չորս ընկեր խաղ էին կազմակերպել՝ «Երկուսը մեկի դեմ»։ Նրանք ունեին 10 գնդակ։ 9 գնդակներից յուրաքանչյուրի վրա գրված էր մի տառ՝ խաղացողների ազգանվան, անվան և հայրանվան սկզբնատառերը (ԱԱՏ-ԲՈԽՄԳԻԼ)։ Իսկ վերջին գնդակի վրա գրված էր հսկիչի անվան երկրորդ տառը՝ Ր։

Նրանք գծեցին 6 մ և 10 մ տրամագծերով երկու համակենտրոն շրջանագիծ և սկսեցին խաղը։ Խաղացողներից երկուսը, առանց դուրս գալու շրջանային գոտուց, տրամագծի ուղղությամբ միմյանց էին նետում գնդակները։



Հակառակ խաղացողը, ներսի շրջանից դուրս չգալով, ձգտում էր որսալ նետված գնդակները և հանձնել հսկիչին։ Հսկիչն ստանալով վերջին գնդակը, գնահատում էր խաղը և նորից սկսում՝ փոխելով խաղացողների տեղերը։

Շրջանագծի կենտրոնում կանգնած Արամին հաջողվեց յուրաքանչյուր նետված գնդակի հաջորդը որսալ։ Հսկիչն ընդունելով գնդակները, հաջորդականությամբ դասավորեց կողք-կողքի, այնպես, որ կարդացվեց՝ բարի գալուստ։

Տառերի ի՞նչ հաջորդականությամբ էին նետվում գնդակները, եթե բոլոր գնդակները նետելուց հետո երկրորդ խաղացողը նա էր նետում բռնած հաջորդականությամբ և նորից ստանում առաջինից ու այսպես, մինչև վերջինը կստանար հսկիչը։

ՍԱՐԳԻՍ ՆԵՐՍԻՍՅԱՆ

## ՀԻՇԻՐ ԵՎ ՆԿԱՐԻՐ



## Հանելուկներ

ՀԱԶԱՐ եղջյուր ունի գլխին  
Ու մի ոտք՝ ճողում,  
Ծնվում, ապրում ու մեռնում է  
Միևնույն տեղում։

*

ՃԱՇԻՆ մանուկ է փոքրիկ,  
Երեկոյան՝ հսկա,  
Կպած է միշտ ոտքերիդ,  
Ուր որ գնաս կգա։

*

Ի՞ՆՉ ծով է, որ գիշեր ու զոր  
Ծփում է անփույթ,  
Մոտից նայես՝ անգույն է նա,  
Իսկ հեռվից՝ կապույտ։

*

Ո՛Չ փայտ է դա, ո՛չ յուղ,  
Ո՛չ նավթ է, ո՛չ ածուխ,  
Ինչքան կուզես վառիր,  
Ո՛չ մուր ունի, ո՛չ ծուխ։

*

ՄՂՈՒՄ են միշտ  
Ահեղ մարտ,  
Բայց չի զոհվում  
Ոչ մի մարդ։

*

ՈՒՆԵՄ երկու կենդանի,  
Վաղուց ի վեր ընտանի,  
Մեկը համեստ ու խոնարհ  
Բեղ ունի, մորուք չունի,  
Իսկ մյուսը սատանի չար,  
Մորուք ունի, բեղ չունի։

Ս. ՄԿՐՏՉՅԱՆ

ԱՅՆ ի՞նչն է, այն ի՛նչ,  
Աշխարհի չափ հին,  
Հողի ընկերն է,  
Հրի թշնամին։

*

ՍԱՐՈՒՄ, հորում, կածանում  
Ծաղկի սերմ է նա ցանում,  
Թեև մայր չէ սիրասուն,  
Բայց միշտ օրոր է ասում։

*

ԲՌՈՒՆՑՔԻ չափ մեքենա,  
Ամեն տեղ քեզ հետ է նա,  
Անում է քեզ օրն ի բուն,  
Քնած լինես, թե արթուն։

ՄԿՐՏԻՉ ԿՈՐՅՈՒՆ

# ՊԱՏԱՆԻ ԸՆԹԵՐՑՈՂ

Ահա դու ստացար «Պիոների» 10-րդ համարը և կարդում ես։ Եթե ամսագրին բաժանորդագրվել ես մեկ տարով, կստանաս ևս երկու համար, ու տարին կվերջանա։ Քո ընկերները, որոնք յուրաքանչյուր համարը կարդալուց հետո նամակ են ուղարկում խմբագրություն, հայտնելով իրենց կարծիքն ու ցանկությունները, մեզ արդեն գրել են, որ 1964 թվականին նույնպես ուզում են «Պիոներ» ստանալ։ Նրանք արդեն ամսագրին բաժանորդագրվել են ամբողջ տարով։

Իսկ դո՞ւ...

«Պիոները» հայ երեխաների համար լույս տեսնող միակ պատկերազարդ ամսագիրն է մեր հանրապետությունում, և բոլոր հայ դպրոցականները պետք է ստանան ու կարդան իրենց ամսագիրը։

**ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է**

**«ՊԻՈՆԵՐ» ամսագրի 1964 թվականի**

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ**

1964 թվականին ավելի հետաքրքրաշարժ նյութեր կտպագրվեն «Չգիտես՝ իմացիր», «Հարցրու՝ կպատասխանենք», «Ժամանց» բաժիններում։ Դու կկարդաս իտալացի հռչակավոր գրող Ջանի Ռոդարիի «Ջելսոմինոն խաբեբաների աշխարհում» վիպակի շարունակությունը։ Ապրիլ կամ մայիս ամսից կսկսվի տպագրվել «Երկնագույն հուլունքը» շատ հետաքրքիր վիպակը։

Պատանի ընթերցող, եթե ուզում ես ստանալ «Պիոների» 1964 թվականի համարները, քո ցանկությունը հայտնիր ծնողներիդ, խնդրիր 2 ռուբլի 40 կոպեկ և դիմիր ավագ ջոկատավարին։ Ամսագրին կարող ես բաժանորդագրվել նաև 6 ամսով, իսկ մայիս-հունիս ամիսներին կըբաժանորդագրվես երկրորդ կիսամյակի համար։ 6 ամսվա արժեքն է 1 ռ. 20 կ.։

Շտապի՛ր, քանի դեռ բաժանորդագրությունը չի ավարտված, և նույնը խորհուրդ տուր ընկերներիդ։

ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ ՆԿ. ԳՐ. ԽԱՆՋՅԱՆԻ

Չորրորդ էջի լուսանկարը՝ Վ. ՍԵՎՈՅԱՆԻ


Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.
*Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06։*

*ՎՖ 10449 Պատվեր՝ 1554։ Տպաքանակ՝ 11.250։ Տպագրական 5 մամուլ։ Ստորագրված է տպագրության 23/IX 1963 թ.։ ՀՍՍՌ կուլտուրայի մինիստրության պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան փ., № 91։*

Գինը 20 կ.

ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ
ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ
ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ



Ռոնկոլե գյուղի փոքրիկ պանդոկի մոտ դեռ ոչ ոք չկա։ Դեռ շատ վաղ է, նույնիսկ արևը մայր էլ չի մտել, բայց պանդոկապետի փոքրիկ տղան եկել և անհանգիստ ներս ու դուրս է անում։ Թեպետ նա գիտե, որ դեռ վաղ է, որ բոլորը հավաքվելու են երեկոյան հովին, բայց միևնույն է, ինչպես միշտ, այսօր էլ նա բոլորից շուտ է եկել ու անհամբերությամբ սպասում է այդ հանդիսավոր պահին։

Արևի վերջին շողերը թաքնըվեցին հորիզոնի հետևում...Ռոնկոլեի երաժշտասերները սկսեցին հավաքվել իրենց փոքրիկ գյուղի փոքրիկ պանդոկի մոտ, որպեսզի օրվա գործ ու հոգսից հետո մի քիչ թարմանան ու զվարճանան թափառաշրջիկ երաժիշտների նվագը լսելով։

Հնչում են ժողովրդական երգերի մեղմահնչյուն մեղեդիները։ Բոլորը հմայված լսում են, բայց պանդոկապետի փոքրիկ տղան, որ նստել է կույր ջութակահար Բագասետի մոտ, ասես ամբողջովին վերացել է աշխարհից։ Նրա մանուկ երևակայությունը անհագորեն կլանում էր այդ հնչյունները ու դրանց տալիս իր, միայն իր երանգները ու գույները։ Նոր երգեր էին ելնում նրա հոգուց ու թևեր առնելով, սավառնում էին կարծես...

Բագասետեն առաջինը նկատեց երեխայի շնորհքը։ Նա շարունակ դիմում էր պանդոկապետին.

— Որդիդ մեծ մարդ կդառնա, տուր նրան երաժշտության. անպայման տուր, ափսոս է երեխան։

Անցան տարիներ...

Եվ ահա Ջուզեպպե Ֆորտունատո Ֆրանչեսկո Վերդին Բուսետոյի քաղաքային խորհրդից ստանալով երկու տարվա նըպաստ, վառ հույսերով ու մեծ հավատով հայրենի գյուղից մեկնեց երաժշտության կենտրոն՝ Միլան։ Գյուղացու կոպիտ հագուստով և համարյա նույնքան կոպիտ արտաքինով տասնութամյա այդ պատանին եկավ Միլան՝ երաժշտության մեծ արվեստին տիրապետելու։



## ՋՈՒԶԵՊՊԵ ՎԵՐԴԻ

Սակայն նրա հրճվանքն ու սրտի թրթիռը իզուր անցան։ Կոնսերվատորիա ընդունվելու նրա վառ հույսերը չիրականացան։ Քաղքենի ու փափկասուն դասախոսները նայեցին միայն նրա արտաքին տեսքին, իսկ փայլուն տաղանդը և նուրբ ճաշակը չընկատեցին։ Ջուզեպպեն ստիպված եղավ բավարարվել՝ մի հայտնի երաժշտի մոտ տնային դասեր վերցնելով։

Իր համեստ միջոցների մեծ մասը նա ծախսում էր օպերաներ լսելու վրա, բաց չթողնելով համարյա ոչ մի ներկայացում։ Նրա հոգում բույն դրած օպերա գրելու անհագ ցանկությունը նրան հանգիստ չէր տալիս։ Նա ուզում էր գրել ժողովրդի կյանքի, նրա տառապանքների, գավերի մասին։ Վերդիի ամբողջ ներաշխարհը հարուստ էր ժողովրդական ու եկեղեցական երգերի գանձերով, որոնք և հանդիսացան իր ստեղծագործության աղբյուրը։

Եվ ահա Միլանի Լա Սկալա օպերային թատրոնում, որտեղ Վերդին շարունակ լսե՛լ էր ուրիշ կոմպոզիտորների ստեղծագործությունները, այժմ հանդիսականները պետք է լսեին մի նոր, մի անծանոթ կոմպոզիտորի ստեղծագործություն։ Ջուզեպպե Վերդիի առաջին գործը՝ «Օբերտո» օպերան, մեծ հաջողություն ունեցավ։ Այնուհետև իր համարձակությամբ ապշեցնելով քննադատներին, նա գրեց «Լոմբարդցիները», «Էռնանի», «Ժաննա դ՚ Արկ» օպերաները, որտեղ երաժշտության ամենանուրբ ու պայծառ արտահայտչականությամբ նա արտացոլում էր Ավստրիայի գերիշխանությունից Իտալիայի ժողովրդի ազատագրման պայքարը։

Չի կարելի չլսել Վերդիի «Ռիգոլետտո», «Տրուբադուր», «Տրավիատա», «Աիդա», «Օթելլո» օպերաները, որոնց երաժշտությունը այնքան պարզ, այնպես հմայիչ ու գերող է, որ շատ խորն է տպավորվում և անջընջելիորեն մնում է հիշողության մեջ։

Վերդիի վերջին գործը, որը գրել է իր կյանքի վերջին տարիներին, «Ֆալստաֆ» երգիծաբանական օպերան է։ Նա իր ամբողջ կյանքի ընթացքում հարազատ մնալով ժողովրդին, գրել է այնպիսի աշխարհահռչակ և անկրկնելի 26 օպերաներ, որոնք մինչև այսօր էլ աշխարհի բոլոր օպերային թատրոնների զարդն են հանդիսանում։

Լրացավ մեծ կոմպոզիտոր Ջուզեպպե Վերդիի ծննդյան 150 տարին։

Ա. ՍԱՀԱԿՅԱՆ






